# ՑԱՆԿ





մարդկան և առաւել գթացութիւն ունեցող ընծա-ներ կը նուիրեն, չեմ նախանձիր. մանաւանդ կը բաղ-ձամ և կը փափաքիմ. ինծի համար բաւական, ու նաև շատ է որ զայս չ՚մերժէք, փոշի մը, ասկէց առաւել պատիւ չ՚արժէր:

Ի վախճանն գուցէ ոմանք պիտի զարմանան, տես-նելով որ գրուածոյս մէջ ամէն սահմանադրական պար-տաւորութիւնները յիշուելով միայն սիրոյ վրայ լը-ռութիւն պահած ենք. սէր, առանց որոյ ամենայն ազգային միութիւն, բարեկարգութիւն և երջանկու-թիւն անհնար է:

Ասոր պատասխանն իս դիւրին է. սէրը Աստուածա-յին պատուիրանք մըն է, Աւետարանին գրեթէ ամէն էջին մէջ կրկնուած, քրիստոնէի մը համար սիրոյ յոր-դորանք մը գրել, ես իսկապէս ամօթ կը համարիմ. այն անձը որ Աստուծոյ հրամանին պատուիրանազանց կ՚ըլ-լայ, կրնա՞յ երբէք մարդկային յորդորանօք համոզուիլ. ես չեմ կարծեր. դարձեալ Քրիստոս ըսաւ սիրեցէք, ինչպէս ըսաւ հաւատացէք. և որովհետև եկեղեցին կը վարդապետէ որ հաւատքը շնորհք մըն է և ոչ թէ ա-ռաքինութիւն. նոյնը կը պարտաւորինք ըսելու նաև սիրոյն համար. ուստի յայս միայն կրնամ յորդորել, որ խնդրենք Աստուծմէ ամենեսեան համար նաև այս շը-նորհքը, և յուսանք իրմէ նաև այս պարգևը, և այս յուսով լմնցընենք մեր խօսքը, ամէն օրուան պատա-րագուորի վերջին աղօթքովը:

"Մի՛ թողուր զյուսացեալքս 'ի քեզ . . . զխա-
"ղաղութիւն քո պարգևեա՛ . . . ամենայն ժողո-
"վրդեանս: Զի ամենայն տուրք բարիք, և ամենայն
"պարգևք կատարեալք 'ի վերուստ են իջեալ, առ 'ի
"քէն, որ ես հայր լուսոյ. և քեզ վայելէ փառք, իշ-
"խանութիւն, և պատիւ, այժմ, և միշտ, և յաւի-
"տեանս, յաւիտենից. ամէն: (1)

(1) Հոս կը պարտաւորիմ ներումն խնդրել քանի մը տպագրական սխալներուն համար որ գործոյս մէջ սպրդած են, ուսկից ազատ գիրք մը գրեթէ չկայ. և զորոնք խոհական ընթերցողք կրնայ ինքնին ալ ուղղել.

թիւնը․ երանի թէ ունենայինք ամէն մարդկային կիրքերէ, ու ամէն ազգային վրդովմունքներէ ազատ վեհ մաքուր և բարձր հոգի մը․ ուր անարգ և ստորին նըկատմունքներ ամենևին տպաւորութիւն մը չեն կրնար ընել, այն ժամանակը ազգին նորոգութիւնը Նախախնամութենէն որոշուած և ստուգուած կը համարէի։

Իսկ դուք ժողովուրդք, գիտէ՞ք և կը ճանչնա՞ք արդեօք նոյն իսկ ձեր մասին ինկած բաժնին ծանրութիւնը և անոր պատասխանատուութիւնը․ գիտէ՞ք որ հիմայ ձեր ձեռքերովը պիտի ստորագրէք բազմադարեայ ժամանակի մը և գուցէ անդառնալի դարերու համար ձեր երջանկութեան կամ թշուառութեան հրամանագիրը, գիտէ՞ք որ Հայ ազգին համար դարագլուխ մը եղած էք, ուսկէց պիտի հաշուին ձեր վշտաց, տառապանաց կամ յաջողութեանց և բարեբաղդութեանց օրերուն երկարութիւնը․ եթէ գիտէք, երանի ձեզի․ եթէ չէք գիտեր, ճանչցէք ձեր պարտաւորութիւնները որոնք միայն կրնան ձեզի սորվեցընել այն ամենը, որով դուք, ձեր որդիքը, և անոնց որդիքը յազգաց յազգս երջանիկ կ՚ըլլաք անշուշտ։

Ձեր սիրոյն համար գրեցի, և ահա ձեզ կը նուիրեմ մեր այս քանի մը գիշերուան դուզնաքեայ աշխատութիւնը, որ եթէ մեր արդէն ճանչցուած ապիկարութիւնը կրնայ նորէն ապացուցանել, կրնայ միանգամայն հաստատուն և մշտնջենաւոր վկայ մը կանգնիլ գոնէ մեր անկեղծ բարեկամութեանը, զորն որ այս գործքիս մէջ չ՚կրցան սասանել երբէք, ոչ կիրք, ոչ կուսակցութիւն, ոչ մարդահաճոյութիւն, ոչ նախապաշարմունք և ոչ ալ կեղծաւորութիւն մը։

Իմ կարողութենէս վեր է ասկէց զուտ, ասկէց մաքուր և ասկէց օգտակար ընծայ մը ձեզի նուիրելու, թէպէտ բանասիրական գեղեցկութիւններէ բոլորովին զուրկ։ Կը յուսամ թէ ձեր մէջէն կելլեն ուրիշ արժանաւորագոյններ, որոնք գեղեցիկը օգտակարին հետ միացունելով ձեզի առաւել ընտիր․ առաւել բաղ-

սերունդը զայն իր վրայ առած է, մանաւանդ թէ խումբ մը մարդոց կռնակը բեռցուցած է. չորս հազար տարուան ազգ մը իր աչքերը տնկած է այսպիսի զարմանալի տեսլեան մը։

Ես, կը դողամ այսպիսի սարսափելի պատասխանատուութեան մը առջին, և կը շուարիմ երբ կը տեսնամ այնպիսի թեթևամիտներ որոնք ազգ մը փրկելը առօրեայ խաղալիկ մը կը համարին։ Չէ՛ ազնիւ բարեկամներ, չէ, միլիոնաւոր ազգի մը առջին առաջնորդ կանգնիլը այնչափ դիւրին բան չէ ինչ որ ձեզի կերեւայ. ապա թէ ոչ այսչափ ազգք և ազինք ինչու համար մինչև հիմայ երերեալ և տատանեալ պիտի հեծէին. մինչ անոնք մենէ յառաջ ալ ունէին իրենց քարոզիչները, ճարտասանները, տրամաբանները, բժիշկները, լեզուագէտներն ու մանաւանդ խմբագիրները։ Ունեցան, բայց տակաւին կը հեծեն և պիտի հեծեն։

Բանաստեղծք կրնան երևակայել միշտ գաղափարական գեղեցկութիւն մը, ինչպէս նաև գաղափարական ազգ մը, բայց իսկութիւնը շատ տարբեր հանգամանքներ ունի երևակայականէն։

Ազգ մը նորոգելու համար, հասարակ մարդիկ երբեք բաւական եղած չեն. ասիկայ ուրիշ ձեռքերու գործք է։

Գերագոյն հանճար մը, սուր դատողութիւն մը, սքանչելի նախատեսութիւն մը, և մանաւանդ գերազանց խոհեմութիւն, արիութիւն ու արդարութիւն, ասոնք են նորոգող ձեռքի մը յատկութիւնները։

Հասարակ գրքերէ և անարգ զգացումներէ, գրծուած նախապաշարմունքներէ, վեր, շատ վեր, շատ բարձրագոյն հոգւոյ տէր եղողներու միայն տրուած է այսպիսի պաշտօն մը 'ի գլուխ հանելու ան ալ 'ի դէպ ժամանակի, և աստիճանաբար։

Երանի թէ այսպէս ըլլային այսօրուան օրս ազգին իշխանութեան ղեկը բռնող այն պատուաւոր անձինք. երանի թէ ճանչնային իրենց անցեալին ներկային ու ապագային տալու պատասխանատուութեան ծանրու-

նիս, ու մեր խիստ պայծառ օրերէն մինչև յետին թըշուառութեան հասած օրերնիս քննենք ամեն գործողութիւնը, և տեսնենք միթէ անոնք մէյմէկ պատահարք են, եթէ ամեն գործք իր պատճառը ունի, և եթէ ամեն նախկին գործողութիւն իր յետագային պատասխանատու եղած է թէ ոչ։ Ու եթէ այս այսպէս է, հարցընենք մենք մեզի, թէ մեր հիմակուան գործողութիւններն ալ կրնա՞ն իրենց յաջորդելու գործողութիւններուն պատասխանատուութիւնը իրենց վրայ առնուլ. եթէ կրնան երջանիկ ենք, և եթէ չէ ապերջանիկ, մենք և մեր յաջորդները։

Ուստի եթէ ազգը, Սահմանադրութեամբ դիպուածական դրութենէ մը դուրս ելած, և մասնաւորական դրութեան մը մէջ մտած է, այլ պէտք չէ որ իր գործողութիւնները դիպուածական բաներ ըլլան, այլ ամենն ալ խոհականութեամբ քննադատեալ. ապա թէ ոչ ինչ ձև որ ունենանք դիպուածական վիճակի մը արկածից ենթակայ կ'ըլլանք։

Բնութեան կամ անոր տէրը եղող Նախախնամութեան պատիժները միշտ սաստիկ են, որովհետև իր համբերութիւնը հատցընելու չափ արկածից և անկարգութեանց դէզ մը կը պահանջեն։ Ուստի ժամանակ մը անկարգութիւնը կրնայ անպատիժ մնալ. որն որ անզգայներուն աչքին յաջողութիւն մնալ կրնայ երևալ. բայց հոս որ պատիժը սկսած է, վասն զի յաջողութիւնը վստահութիւն կ'արտադրէ, վստահութիւնը թուլութիւն, թուլութիւնը անհոգութիւն, անհոգութիւնը պակասութիւն. պակասութիւնը յանցանք, և յանցանքը պատիժ։

Հիմայ ալ ան ժամանակները չենք որ ազգին թըշուառութիւնը կամ երջանկութիւնը մէկին մէկալին վրայ ձգենք. հիմայ ոչ Վաղարշակ կայ, ոչ ալ Արշակ, ոչ Վարդան կայ ոչ ալ Վասակ. հիմայ ազգն է ազգին իշխողը, և զայն որ չ'կարացին ոչ աշխարհակալ Թագաւորներ և ոչ սրբազան Քահանայապետներ, ներկայ

նիր որ յովկիանոս կիյնայ և կ՚անհետանայ, ոչ երբեք․ ամէն գործողութիւն պատճառ պիտի ըլլայ ու քիչ գործողութիւն մը արտադրելու, իրեն, ուրիշին, ազգին կամ տէրութեանը օգտակար կամ վնասակար․ այս գործողութիւնները երբեք չ՚պիտի անհետանան ինչպէս աշխարհիս մէջէն ալ հիւլէ մըն ալ ոչ կրնանք պակսեցընել և ոչ կրնանք աւելցընել․ եթէ բոլոր աշխարհ այսպիսի հիւլէներէն բաղկացեալ է, բոլոր բարոյական աշխարհն ալ նմանապէս այսպիսի գործողութիւններէն բաղկացեալ է․ և եթէ հիւլէներուն այս կամ այն կերպով տրամադրութիւնը նիւթական աշխարհի մէջ, ոսկի պատճառած է կամ ժանգ, այսպէս ալ մարդկային գործողութեանց այս կամ այն տրամադրութիւնը, մարդկային ազգին աղէկութիւններ կամ գէշութիւններ պիտի պատճառէ անշուշտ։

Ուրեմն բարոյական աշխարհի մը առջին, մինչև անգամ անհատ մը անտարբեր բան չէ, մանաւանդ երբ կը տեսնենք որ անհատ մը կրնայ բոլոր մարդկութեան, ազգի մը, տէրութեան մը կամ ժողովրդեան մը անհամար բարիք ընել, ինչպէս նաև անհամար չարիք։

Աս տեսակ ըլլալով, անհատ մը նախ ինքն իրեն պարտականութիւններ ունի, ետքը ընկերին, ետքը ազգին, տէրութեան, ետքը բոլոր մարդկային ազգին։

Ուստի ազգի մը ժողովրդեան մը կամ տէրութեան մը այս կամ այն վիճակի մէջ գտնուիլը, իր անհատներուն գտնուած վիճակին բովանդակութիւնն է, բոլոր մը որ անհամար մասունքներէ կը բաղկանայ։ Մարմին մը այնչափ զուտ է, որչափ իր մասունքները իրարու նման են, նմանապէս ազգ մը և ժողովուրդ մը, այնչափ ընտիր այնչափ ազնիւ է, որչափ իր անհատներուն բարոյական կատարելութիւնները իրարու համեմատ են, և ասոր ներհակն ալ հարկաւ ներհակ եզրակացութիւններ կունենայ։

Այս ընդհանուր տեսութիւններով քննենք հիմայ մեր ազգը։ Քննենք Ազգային պատմութիւնը առջեւ-

ազգի և Թագաւորութիւն Թագաւորութեան վրայ կելլայ, ինչու տեղ մը արիւն կը վազէ տեղ մը հուրը կը լափէ, ինչո՞ւ ժողովուրդ մը երջանիկ է և միւսը Թշուառ, ինչո՞ւ մէկը առատութեամբ կը ղեղխի և միւսը սովամահ կը տանջուի. ալ ատոնք ոչ գիտաւորի մը կուտանք, ոչ տարուոյն տանուտէրին, ոչ գետնաշարժութեան և ոչ լուսնի կամ արեգակի խաւարման, էֆիմէրտէյի դարերը անցան և ալ ետ չեն դառնար:

Եւ հիմայ մարդ մը ինքզինքը, իր անցած գացածը, իր գործողութիւնները առջին առնէ ու զննելու որ ըլլայ, կրնայ դիւրաւ գտնալ իր երջանկութեն կամ Թշուառութեն պատճառները. կրնայ զանոնք ուղղել, ու իր վիճակը 'ի լաւագոյն փոխել. կրնայ յամառիլ, և իր Թշուառութիւը մշտնջենաւորել, այսպէս ալ ազգ մը, այսպէս ալ տէրութիւն մը, այսպէս ալ մարդկային ազգը:

Այս կարգով կանոնով է որ Աստուած միշտ ներկայ է ամէն տեղ, ամէն ժամանակ, ամէն արարածոց մէջ: Ամէն ողորմութիւն կրնանք խնդրել Աստուծմէ, բայց իր ամենիմաստ Արարչութեամբը տուած կարգէն ու կանոնէն դուրս բացառութիւն մը խնդրելը, յանդըգնութիւն մըն է. շնորհք, պարգև, կրնանք խնդրել իրմէ, բայց իր յաւիտենական կարգադրութեանցը փոփոխութիւնը ոչ երբէք.

Այս ճշմարտութիւնը եթէ մարդկային ազգին մըտքին մէջ աղէկ մը տպաւորուէր, և բնականով ըլլալիքը, առանց իրաւանց գերբնականէն չ'սպասուէր, մարդկային ազգը դէպ 'ի իրեն երջանկութիւնը շատ մեծամեծ քայլերով յառաջ գացած կ'ըլլար մինչև հիմայ. որ ազգ, որ ժողովուրդ և որ անհատ, որ ասով կը վարուի, երջանկութեան ճամբան իր առջին բաց է, և առաջին քայլէն կսկըսի զանիկայ վայելելու:

Բայց ի՞նչ են արդեօք այս գաղտնիքը, որուն այսչափ դարեր սպասել հարկ եղաւ. շատ դիւրին բաներ:

Թող ամէն մարդ մտմըտայ միայն որ մեծ և փոքր իր ամէն գործողութիւններովը կաթիլ մի ջրոյ չ'նմա-

կոպտագրեր, որչափ ալ Հաստատուն ոչ բերու անտեսանելի էր. և որչափ ալ մարդկային գործողութեանց ի-րարու վրայ դիզումը, պանիկլոյ ծածկելու կը ջանար, ինչպէս քիմիականութեան նկատմամբ, ծանօթ մա-միննիկը, անծանօթ տարրերը կրցած էին մինչև հի-մայ ծածկել անփորձ աչքերէ.

Փիլիսոփայութիւնը կրցաւ յայտնապէս ապացու-ցանել, որ մարդկային ազգին պատմութիւնը երբէք դիպուածական պատահմունք մը չէր, այլ պատճառաց և արդեանց բնական ձգումը. և թէ ամեն գործողու-թիւն պատասխանատու էր յաջորդ գործողութեան մը, որմէ՛ և անոր պատճառն էր. առով լուծուե-ցան բոլոր պատմական դժուարութիւնները. առով կը գրուի այսուհետև պատմութիւնը, և առով պիտի գրուի մինչև դարուց վախճանը։

Աստուածային նախախնամութիւնը, որ մեծամեծ արեգակներէ մինչև աւազի մը հատիկը, և բազմա-դարեայ ծառերէն մինչև ոտնակոխ խոտիկը, և վիթ-խարի ահագալաններէն մինչև ովկիանեան ֆօսֆորա-կենդանիկը, անփոփոխ կարգ և կանոններով կը կա-ռավարէ, կրնա՞ր իր ամենէն սքանչելի արարածը եղող մարդկային ազգը, կոյր բաղդի մը արկածից գերի թո-ղուլ, և անոր գործողութեանց ալ կարգ և կանոն մը չտալ, այսպիսի մտածմունք մը, եթէ երբէք մարդուս մտքէն կարելի ըլլայ անցնիլ, կրնա՞յ երբէք միաբանիլ Աստուծոյ ծայրագոյն բարութեան, իմաստութեան, և կատարելութեան հետ. ոչ երբէք։

Արդէն մարդկային գործողութիւններն ալ ունին իրենց հաստատուն կարգը ու կանոնը. որոնցմէ դուրս ելլալը ուրիշ բան չէ՝ բայց եթէ Աստուածային կամաց հակառակութիւն մը, որուն պատիժը արդէն իր մէջն է։ Ահա այս գաղտնիքը նշմարեցին ներկայ դարուս փի-լիսոփայք, մարդկային ազգին յայտնեցին, և անժխտ-ելի փորձերով հաստատեցին։

Եւ այսուհետև բնաւ չենք զարմանար, ինչու ազգ-

# ԳԼՈՒԽ ԺԲ.

## Ընդհանուր տեսութիւն։

Դարերնիս սքանչելեաց դար է. մարդը տարերաց յաղթեց, ծովերու և հողմերու տիրապետեց, ցամաքը, երկաթեայ թևերով կը թռչի, յօդս կը սլանայ, արեգակը գործաւոր կ՚ընէ և իր պատկերը քաշել կու-տայ, հոս կը խօսի և ձայնն կը լսեցընէ. հրաշալիք հրաշալեաց, ո՛վ չ՚զարմանար։

Բայց ասոնց ամենն ալ ոչինչ բաներ կը սեպուէին, եթէ փիլիսոփայութիւնը ասոնցմէ գերազանց, ասոնցմէ օգտակար և ասոնցմէ սքանչելի, նոր պարգև մըն ալ չ՚ճառուցանէր մարդկային ազգին, և որուն համար թէպէտ դիցաբանական լեզուաւ, բայց համարձակ կրնանք ըսել. Փիլիսոփայութիւնն զմարդն աստուածացոյց։

Այս հրաշալի պարգևն է բնութեան ամենակարևոր մէկ գաղտնեացը յայտնութիւնը, յորմէ այսչափ դարերէ հետէ զուրկ էր մարդկային ազգը, զրկում մը որ զինքը այսչափ մահաբեր ու համակործան վտանգներու դատապարտած էր, ուստի երբ ՍԷՆ ՍԻմոն ըսաւ, մարդկային ազգին ոսկի դարերը իր առջին են, և ոչ թէ իր ետևը, անշուշտ այս հրաշալի պարգևը գուշակած էր։

Բացայայտենք այս գաղտնիքը։ Դարուս մէջ քիմիագէտը երբ մարմիններուն բաղադրութիւնը լուծեց, և անով մեկնեց տարրական ձգողութիւնները, որ ինչպէս մի և նոյն տարրը զանազան մարմնոց մէջ մի և նոյն ազդեցութիւնը կ՚ունենար, փիլիսոփայն նոյնը գտաւ մարդկային գործողութեան տարերաց մէջ. առաւ փիլիսոփայն իր առջին մարդկային ազգին գոնէ վաթսուն դարուց պատմութիւնը, լուծեց անոնց բաղադրութիւնը, և տեսաւ որ ամենևին պատահական բան մը չ՚կար իր մէջը, յայտնի նշմարեց որ ամեն գործք իր պատճառը ունէր, և մի և նոյն պատճառը ամեն տեղ, ամեն ժամանակ, ամեն ազգի մէջ մի և նոյն գործքը

տաւորն է, վասն զի միայն անիկայ է որ ոչինչ բանը ինչ մը կընէ, և ինչը ինչ.ք կ՚ըլլայ, այսինքն թէ հարստութիւն. փայտի կտոր մը որ տասը ստակ չըներ, արուեստաւորի մը ձեռքով տասը հազար դահեկանի արժէք կրնայ ունենալ. որուն ոչ երկրագործութիւնը կը հանէր և ոչ վաճառականութիւնը. ուստի որչափ օգնութիւն և քաջալերութիւն տրուի արուեստաւորաց. այնչափ ազգին հարստութեան նոր դուռներ կը բացուին: Վաճառականութեան համար խիստ քիչ է ըսելիքնիս, վասն զի սահմանադրական դրութիւն մը չենք կարծեր որ տալ ուղղակի տրամադրութիւններ կարենայ ընել. երբ ազատութիւն մը չէ. իսկ եթէ յորդորական մասին գանք, եթէ մեր նախնի վաճառականութեան պայծառութիւնը ու հիմա աչքերնուս առջին եղած այնչափ ազգաց և ազանց նոյն իսկ մեր կանըկէն անբաւ հարստութիւններու ազատ ըլլալնին եթէ յորդորանք մը չեն կրցած ըլլալ, ուրիշ որ և իցէ տրամադրութիւններէ աւելի զօրաւոր յորդորանք չենք կրնար գտնալ:

Վերջապէս, բարոյական, կրթութիւն, և հարստութիւն, ասոնց երեքն ալ սահմանադրական ազգ մը իրմէն և իր վարչութենէն պիտի միշտ սպասէ, իրմէն, իր պարտականութիւնները վարչութեան հատուցանելով, և վարչութենէն, անոր պարտականութիւններն ալ անկէց պահանջելով. ազգը պիտի յօժարութիւն ունենայ կրթուելու, և վարչութիւնը պիտի մատակարարէ ազգին կրթութեան միջոցները, և ահա ասոնք են ճշմարիտ սահմանադրական արդիւնքներ, վասն զի միապետական դրութեան մէջ. միապետը իր հպատակը կուզէ կը կրթէ կուզէ ագէտ կը պահէ, կուզէ հարուստ, կուզէ աղքատ: Իր նպատակը գահն ու թագն է, Սահմանադրութեանց նպատակը միայն կ՚ըլլայ ազգը, հոն ամբողջ ժողովուրդ մը թագին կը ծառայէ, հոս վարչութիւնը ժողովրդեան պիտի ծառայէ, և կարծեմ զանազանութիւնը այնչափ անզգալի չէ:

է, որով գործելու կերպերնին միշտ նոյն պահելով, միշտ մի և նոյն արտադրութիւնը կունենան, առանց մտադնելու ժամանակին բնական և քաղաքական փոփոխութեանց. որոնք կատարելագործութիւն կը պահանջեն. այս ախտը Եւրոպացիք ալ ունեցան, և գուցէ ալ անոնցմէ ոմանք տակաւին ունին. ՚ի մասս իսկ իւրեանց. բայց գոնէ անոնցը մէկ ուղղեան մը վրայ հաստատուած է, իսկ մերինը ամենևին անպատճառ.

Երկրորդը արուեստաւորաց տգիտութիւնն է, որոնցմէ շատերը ոչ կարդալ գիտեն, ոչ գրել, ոչ երկրաչափութիւն՝ ձևոց գեղեցկութեան համար, ոչ բնագիտութիւն՝ մարմնոց յատկութիւններու համար, և ոչ քիմիականութի̃ անոնց զանազանութե̃ համար, առանց որոց կատարեալ արուեստաւոր մը չկրնար ըլլալ.

Ասոնց համար արուեստից դպրատուններ հաստատելէն ուրիշ ճար մը չեմ տեսներ. Անգղիա և Ամերիկա ասկէց մեծամեծ օգուտներ քաղած են, և մինչև հիմայ կը տեսնուին շատ մը արուեստարաններ որոնք միանգամայն դպրոց են.

Մանաւանդ Ամերիկացիք, հասարակութեան դիւրիմանալի անանկ արուեստական գրքեր ունին, որոնց Հայը մեծ կարօտութիւն ունի. ասոնք պինդ կուշտ մարդ մըն ալ իբրև թէ ձեռքէն կը բռնեն և անզգալաբար, մինչև վերջին աստիճան ճարտարապետութեան կը հասցընեն. այսպիսի գրքերու թարգմանութիւնը և անոնց պէս պատկերազարդ տպագրութիւնը մեծ օգուտ կընէ արուեստաւորաց. Մէյմըն ալ արուեստաւոր ըլլալը ստորին կամ անարգ բան մը համարուած է մեր ազգին մէջ. անոր համար մեր կօշիկները պէտք է որ Հելլէնացիք կարեն. մեր կահ կարասիքը. Կղզեցիք շինեն. մեր լաթերը Եւրոպացիք կարեն. որով ազգէն շատ մը ստակ դուրս ելլալէն ետև, այսչափ ձեռքեր ալ այսօրուան օրս դատարկ մնացած են. երկնից մանանային սպասելով.

Ըստ իս, ամենէն պատուելի քաղաքացին արուես-

նը իր կարևորութիւնը ունի ։ Հիմակուան ժամանակը Հայ երկրագործութիւնը երկու բան միայն կը պահանջէ, ուր պէտք է որ վարչութեան մտադրութիւնը ամփոփի ։ Մէկը, երկրագործութիւնը իր ամեն տեղական խոչնդոտներէն ըստ կարի ազատել. այսինքն թէ Հայ երկրագործը տարբերութիւն մը չունենայ ուրիշ որ և իցէ երկրագործէ մը. երկրորդ երկրագործութիւնը վաշխէ ազատել. և չթողուլ որ երկրագործի մը քրտանց արդիւնքէն, մէկը իրեն գայ, ու քանը վաշխառուին երթայ ։ Եթէ այս երկու կէտին միտ չ'դրուի. ամեն երկրագործական գիտութիւն ու նորաձևութիւն անմիջապէս յօդս կը ցնդի ։

Բայց ինչ որ երկրագործութեան համար ըսինք, նոյնը արուեստից համար ալ չենք կրնար ըսել, հոս դիրքը բոլորովին կը փոխուի քանի մը պատճառաւ ։

Նախ. Եւրոպայի երկրագործութիւնը մեզ բնաւ չ'վախցըներ. որովհետև Եւրոպան զԵւրոպան երբէք պիտի չ'կրնայ սնուցանել, տեղւոյն նեղութեան և բընակչացը բազմութեան համար. բայց արուեստը այսպէս չէ, Եւրոպայի արուեստը մեր սնունդը մեր ձեռքէն կրնայ առնել և կառնէ ։

Երկրորդ. արուեստները այն խոչնդոտները չունին ինչ որ երկրագործութիւնը ունի, և յայսմ մասին Հայք Տաճկաստանի մէջ առաջին ժողովուրդ կրնան համարուիլ իրաւամբ ։

Երրորդ, մասնաւոր յաջողակութիւնը որ ունի մեր Ազգը, մեքենական արուեստից մէջ. որով կրնանք ըսել որ Հայը երբ արուեստաւոր է, իր բնական տարրին մէջն է ։

Դժբաղդաբար այս ամեն գեղեցիկ յատկութիւններէն ալ, ազգը տակաւին չափաւոր օգուտ մը միայն կը քաղէ. ուր գերաղանցը պէտք էր ։

Ասիկա ալ իր պատճառներն ունի, որոնք խոհական վարչութիւնը կրնայ կամաց կամաց անհետ առնել.

Ասոնց մէկը, արուեստաւորաց հնապաշտութիւնն

որ անտարբեր չեն մեզի համար, բայց անոնցմէ խալըսելը անկարելի։

Շատ անգամ ըլլալով խիստ դժուարին է ազգի մը համար հարստութեան ճամբաներ ցուցընել, երբ այն ճամբաներն ինքն իրեն չկրնար տրամադրել. բոլորովին անշարժ չմնալու համար ալ կրնանք քանի մը նեղ և անձուկ ճանապարհներ բանալ, որոնք կրնան իրենց օգտակարութիւնն ալ ունենալ, կամ անցուդարձի շատութեամբ ժամանակով ալ ընդարձակիլ։

Այս ճամբաները հարկաւ պիտի ըլլան երկրագործութիւն, արուեստ, ու վաճառականութիւն։

Այս երեք ճամբայէն, ազգին համար ամենէն կարեւոր, երկրագործութիւնը կը սեպեմ, ամենէն արդիւնաւոր արհեստը, և ամենէն դժուարին, վաճառականութիւնը. բայց ասոնք ալ իրենց բացառութիւնը ունին. զորօրինակ տեղ կայ որ վաճառականութիւնը աւելի արդիւնաւոր է քան զերկրագործութիւնը և արուեստը, ասանկ մասնաւոր տեղերու համար վերոյգրեալ դասաւորութեան կարգը կրնայ փոխուիլ։

Թէպէտ երկրագործ չեմ և գուցէ ալ կը սխալիմ, բայց իմ կարծիքս ան է որ, աւելի նախամեծար կը համարիմ մեր երկրագործներուն, կարողութիւն հայթայթել իրենց արդէն գիտցածը 'ի գործ դնելու, քան թէ Եւրոպական ձեւով ասոնց նոր երկրագործական գիտութիւն մը սորվեցընել։

Այսինքն կը թողում որ ամեն մարդ իր գիտցածին պէս հերկէ ցանէ ու քաղէ, ասանկ բաներու նկատմամբ ինչ զարմանալի դիւրութիւններ ալ Եւրոպացիք գտած ըլլան նէ ըլլան, մանաւանդ թէ առ այժմ ասոնք մեծ վնաս կը համարիմ ազգին հասարակութեանը։

Վասն զի ազգի մը մէջ երբ շատ պարապ ձեռքեր կան, մեքենական դիւրութիւնները մեծ մաս մը ժողովրդեան ալ կրնայ դարձեալ պարապ ձգել. ես այս դիւրութիւնները այն ժամանակ կընդունիմ, երբ ամեն ձեռք կ'ըզբաղի ու չօգտէր, այն ժամանակը, մեքենակա-

րոնց առջի եկամուտը չօգտէր, ուստի պէտք է որ, յառաջադիմութեան բաղձացող ազգը մէկ կողմանէ ալ հարուստնայ, որպէս զի նոր եկամուտներու դուռ մը բացուի ։

Հարստութեան ճամբայ ցուցընող շատ մը գրքեր քննեցինք, և տեսանք որ ամենն ալ հարստութեան համար բարոյականն ունին իրենց հիմն, անանկ որ բարոյականը ազգի մը մէջ որչափ ծաղկի, հարստութիւնն ալ անոր բաղդաւորութեամբը պիտի ծաղկի ։ Արովհետեւ, խօսքին վրայ կենալ, առածը տալ, խարդախութիւն չընել, պարապ չկենալ, ստակ չվատնել, կարգով կանոնով վարուիլը եթէ բարոյական խրատներ են, հարստութեան ճամբան բացողներն ալ նոյն իսկ ատոնք են ։

Չենք կրնար ըսել որ բարոյականէ դուրս ալ հարստութիւն չըլլար, բայց այսպիսի հարստութիւն մը կամ վայրկենական է և կամ անհաստատական. բայց երբոր խօսքը ազգային ընդհանուր և հաստատուն հարստութեան վրայ է, բարոյականէն դուրս ճամբայ մը չենք կրնար ցուցընել, բայց միթէ ատանկ հիմ մը ունեցող հարստութիւնը միւսէն նուազ է, կամ թէ չունի՞ անհամար ճամբաներ. մենք հակառակը կը հաստատենք ։

Զարմանալի յաջողակութիւն մը ունի մեր ազգը. ամեն գիտութեանց և ամեն արուեստից որոնք հարստութեան մէյմէկ ճամբաներ են. բայց իր այնչափ բընաձիր յաջողակութիւնն ալ իր աղքատ վիճակին մէկ հակառակութիւնն է, ի՞նչ է ասոր պատճառը արդեօք ։

Կայ նախ մեծ պատճառ մը, որուն վրայ կրնանք խօսիլ, բայց ամենայն զգուշութեամբ. երկրիս վրայ գըտնուող մեծամեծ մարմիններուն նկատմամբ մեր ազգը մոլորակ մըն է և գուցէ արբանեակ մը. Ինչ շարժում որ ընէ մեծ մարմինը, մենք ալ անոր պիտի հետևինք. որ կողմը որ տանի, այն կողմը երթանք ։ Մեծ մարմիններէն ուրիշ, երկրորդական ձգողութիւններ ալ կան

ծախուց չափաւորութեան վրայ է։ Հարուստ է այն մարդը, որ ամեն իր ծախքերը հանելէն ետև քիչ մը բան ալ կ'աւելցնէ. սա սաանկ ըլլալով մարդ կայ որ ամիսը հինգ հարիւր դահեկանով հարուստ է, և ուրիշ մը ամիսը հինգ հարիւր քսակով աղքատ. ուստի մարդ մը միշտ հարուստ է, երբ իր ծախքը եկամուտին նկատմամբ կը չափաւորէ։ Ազգի մը համար ալ հարկաւորապէս պիտի ըլլայ. որովհետև ազգ մըն ալ կրնայ ունենալ իր շռայլութիւնը ինչպէս անհատ մը։ Այն ազգերը որ աղքատ են և հարուստնալ կուզեն, պէտք է որ նախ և առաջ իրենց ծախքերը չափաւորեն. և կարեւորը գեղեցիկին չ'զոհեն։ Զորօրինակ ըսենք որ դըպրատուն մը պիտի շինուի. դպրատունը թէ մեծագործ շինուած մը ըլլայ, և թէ հասարակ բայց հաստատուն, աշակերտաց համար մի և նոյն բան է, բայց ազգին համար մի և նոյն բան չէ, վասն զի կամ՝ ան է որ մէկ մեծածախ դպրատան տեղ, նոյն ծախքով երկու երեք հատ կրնար շինել, կամ թէ եթէ այնչափ դպրատուն պէտք չէր, անկէ աւելցած ստակը ուրիշ կարևորագոյն բաներու կրնար գործածել։

Այս խօսքիս վկայ են աշխարհիս այն ամեն մեծագործ շէնքերը, որոնք հիմայ անապատ դարձած են, որոնք միայն իբրև մեծագործութիւն մը կը տեսնուին. բայց կ'երևայ որ այնպիսի մեծագործութեանց բոլորտիքը բնակող ազգերը, իրենց կարողութենէն վեր բանի մը ձեռք զարկած էին, որովհետև իրենք ոչնչացան և շէնքերնին մնաց. երբ կը տեսնանք ուրիշ ազգեր, որ մեծագործութիւն մը չունին, բայց իրենք դեռ կանգուն են. գուցէ մենք ալ կրգտնանք, այսպիսի բաներ նաև մեր ազգին մէջ. մանաւանդ երբ մեր այս խօսքը միայն շէնքի համար չառնենք։

Միւս կողմանէ յիրաւի ազգը ժամանակ մը իր ծախքը եկամուտին հետ կրնայ չափաւորել, բայց տակայ չ'բաւեր. վասն զի յառաջադիմութիւնը միշտ նորանոր և անհրաժեշտ կարօտութիւններ պիտի հանէ, ո

կերական վիճակը առաւելագունին կարօտ է․ վասն զի եթէ մէկ կողմանէ անոնք հինաւուրց խօսքեր և սովորութիւններ են ըսելով ծաղրենք և փճացընենք, անոնցմէ առաւելը տեղը չ'դրած, և միւս կողմանէ ազատութեանց հրապուրանքը ծաւալենք և ընդհանրացունենք առանց նոյնը բարոյականին համար ալ ընելու, ազգը մոլութեանց մէջ ընկղմելէն ուրիշ բան մը ըրած չենք ըլլար։ Ասոր մինչև որ անհատ մը, իր ազգին, կրօնքին, հայրենեացը, մեծերուն, հաւասարներուն, պղտիկներուն, և նոյն իսկ իրեն, ինչ պարտաւորութիւններ ունենալը չ'գիտնայ և չ'գործադրէ, մենք այնպիսիներուն ազատութիւն քարոզելը մահաբեր թոյն տալէն ուրիշ բանի չենք կրնար նմանեցունել. յայսմ մասին ալ կըսենք որ բարոյականը ամեն ազատութենէն յառաջ պիտի երթայ չէ թէ ետևէն գայ. և դպրատանց ուսումնական կրթութիւնները որչափ բարձրանան, բարոյական կրթութիւններն ալ գոնէ այնչափ մը բարձրանալու են։

Կրթութիւնը ուրիշ անթիւ ճիւղեր ալ ունի, որոնց համար մէկիկ մէկիկ խօսելը գործքիս քանակութիւնը չներեր. ամենուն համար ընդհանրապէս այսչափ մը կըսենք որ, ազգը պէտք չէ նմանիլ այն անհատին, որ շուկայն իրարմէ գեղեցիկ կահ կարասիք տեսնելով ամենն ալ ծախու առնելու կ'ելլայ, առանց մըտածելու որ ինքն անոնց ամենն ալ առնելու կարողութիւնը ունի՞, կամ թէ իր փոտտած տանը ամենն ալ կը յարմարի՞ն, վասն զի որչափ ծիծաղական է մէկը, այնչափ ծիծաղական կ'ըլլայ և միւսը։

Բայց որովհետև ըսինք որ կրթութիւնը ազգի մը հարստութեան չափովը պիտի յառաջ երթայ, և կըրթութիւն և հարստութիւն իրարու աջակից պիտի ըլլան, կրթութեան վրայ խօսած ատեննիս հարստութեան վրայ չ'խօսինք, հակասութիւն մը ըրած կ'ըլլանք ուստի քանի մը խօսք ալ ատոր համար։

Հարստութիւնը ստակի շատութեան վրայ չէ, այլ

հետ յառաջ երթալու է ։ Գիտութիւնը, արուեստը ու քաղաքակրթութիւնը անբաւ նոր վայելմունքներ կը պատրաստեն մեզի, եթէ բարոյականը սանձ չ՚չափաւորէ, հարկաւ մէկուն կամ միւսոյն մէջ կ՚ընկղմի ։

Հարկաւ ամեն մարդ լսած է, ինչ աղտոտութիւններ, ինչ զարմանալի վայելմունքներ կայ Եւրոպայի ծոցը. բայց եթէ անոնք մեր մէջը բերենք, կամ թէ մենք հոն երթանք, անոնց հրապուրանացը դէմ դնելու բարոյական մը չունենալով, մեծապէս կը վնասինք. Թող հոս վկայ ըլլան մեզի այն ծնողքները, որոնք իրենց զաւակացը Եւրոպա երթալէն գոհ չեն եղած, և այն պատանիք, որոնք իրենց ապառնին քանի մը տարուան մէջ հոն սպառած են ։

Ազգ մը որ ազատութիւն և վայելմունք չունի, քիչ բարոյականի կը կարօտի, և ասոր զարմանալի օրինակ մը կուտայ նոյն իսկ մեր ազգը. շատերը իրենց հօրը կամ մօրը մէկ խօսքը մէկ բարոյականը, միտքերնին պահելով, մարդ եղած են. շատերէն կը լսենք որ կըսեն. Հայրս ըսաւ ինծի որ անառակի հետ մի տեսնուիր. հայրս ըսաւ ինծի որ սուտ մի խօսիր. հայրս ըսաւ ինծի որ կարողութենէդ վեր բաներու մի ձեռնարկեր. հայրս ըսաւ ինծի որ յաջողութեան օրերուն մի վըստահիր, հայրս ըսաւ ինծի որ գինի մի խմեր. խումար մի խաղար. և այլն. և այլն ։ Նման անթիւ խրատներ կան, որ յորդւոց յորդի կը հասնին, և շատ գերդաստաններու երջանկութեան պատճառ են. դարձեալ կան բարոյականներ, որոնք ծնողաց գործքերէն կառնուին, ինչպէս շատերը կըսեն. հայրս ծերերուն պատիւ կընէր. հայրս բնաւ չէր բարկանար. հայրս ուսումնականները կը յարգէր. հայրս այս ինչ մարդոց հետ չէր տեսնուէր. և այլն. և այլն ։

Ստուգիւ այսպիսի բարոյականները բաւական էին այն ժամանակներուն համար, ուր ազգը ընկերական յարաբերութիւն մը չունէր ։ և գերդաստան գերդաստանի և դուռ դուռի գոց էր. բայց հիմակուան ըն-

բարձրանայ։ Բայց հոն նիւթ չ՚գտնար իր կրթութիւնը սնուցանելու, որով կրթեալ բայց ոգեսպառ կը մնայ։

Վերջապէս մեր քաղաքական վիճակին ինչ կրթութիւն հարկաւոր է նէ անկէց առաւելը մենք սահմանադրական շռայլութիւն մը կը համարինք ու ամեն շռայլութեանց հետ աս ալ կը դատապարտենք։ Բայց այս ամեն բածնիս, ազգային կրթութեան համար է, այսինքն ազգին իր ծախքովը պատրաստելու կրթութեան. ապա թէ ոչ կարողութիւն ունեցող գերդաստաններու զաւակունքը և ուրիշ պատեհութիւն ունեցող անհատները, կրնան ինչ կրթութիւն որ ուզեն իրենց տալ, և անոնց համար ալ բաւական առիթ և բաւական միջոց գտնուած ազգին մէջ։

Գանք հիմայ բարոյական կրթութեան. ազգի մը երջանկութիւնը, ոչ գիտութեանց վրայ է, ոչ արուեստից և ոչ ալ հարստութեան վրայ. ազգի մը իսկապէս երջանկութիւնը իր բարոյականին վրայ է, և բնագէտք կը հաստատեն թէ ամեն կրթութենէ կանխագոյն է, մարդս որ ատեն որ առաքինութիւնը մոլութենէն զատած է, ան ատենը իր բարոյականը ունեցած է։

Սահմանադրական դրութեան մէջ, ուր ազգը ամեն անհատին և ամեն անհատ ազգին փոխադարձ պարտաւորութիւններ ունին, այս կրթութիւնը ամենէն առաջ միտ դնելու կէտ մըն է. վասն զի եթէ ազգը անհատներուն օգտակար պիտի ըլլայ, հարկաւ կը հետևի որ փոխադարձաբար անհատներն ալ ազգին օգտակար ըլլան. և եթէ առաքինի ըլլալը օգտակար է, մոլի ըլլալն ալ հարկաւ անօգուտ կամ վնասակար ըլլալ է։ Այս է ազգի մը բարոյականը։

Բարոյականը անբաժանելի կապակցութիւն մը պիտի ունենայ յառաջադիմութեան հետ. ազգ մը գիտութեանց և արուեստից, և քաղաքակրթութեան մէջ որչափ յառաջ երթայ, իր բարոյականն ալ անոր

Հիմակուան բնական բարոյական և քաղաքական կարգադրութիւններէն ալ վեր կը սեպեմ։

Ես առաւել նախամեծար կը համարէի բոլոր ազգին հասարակ գրել կարդալ և քիչ մին ալ թուաբանութիւն գիտնալը քան թէ հարիւր հատ երևելի փիլիսոփայ և աստեղագէտ ունենալը։

Միայն հասարակ կարդալ գրել կամ քիչ մը թուաբանութիւն չ'գիտնալէն, ազգին ընդհանրութեան կրած վնասը լեցընելու որ կարող ըլլանք, արդեն մեծ շահ մը բրած կ'ըլլանք. և այս շահը ազգը առ մեծագոյնը կ'առաջնորդէ։ Նմանապէս կը բաղձայի որ ամեն Հայ կարենար իր մայրենի լեզուն խօսիլ և հասկընալ քան թէ հարիւրաւոր պատանիք բոլոր Եւրոպական լեզուներու մէջ գերազանցէին։

Կ'ուզէի որ ազգային Միաբանութիւնը բաւական երկար ժամանակի մը համար, միայն հասարակ դպրատուներ շատցընէր, մանաւանդ այն տեղերը ուր ասոնք կամ բնաւ չ'կան, և կամ եղածը ժողովրդեան կարօտութիւնը չ'լեցըներ։

Դպրատուն մը ուր կը սորվուի Քրիստոնէական, գրել կարդալ, մինչև 'ի Քերականութիւն, մեծ ծախքերու չ'կարօտիր. և կարծեմ թէ ազգին հիմակուան վիճակը մեծ ծախքերու ամենևին տրամադրութիւն մը չունի. եթէ այսպիսի մեծամեծ ծախքեր բացուին ազգին առջին, ստոյգ եմ որ քիչ ժամանակէ դատարկաձեռն կ'ելլենք։ Եթէ Հայոց գոնէ մեծագոյն մասը, կարդալ, գրել, խօսել և հաշուել կը սորվի, հետզհետէ կրնայ յառաջ երթուիլ, և օտար լեզուաց բարձրագոյն գիտութեանց, և ազատական արուեստից ալ ճամբայ մը բացուիլ. կրթութիւնը ազգային հարստութեան հետ պիտի յառաջ երթայ. եթէ պատանի մը Եւրոպա խաւրենք, կամ հոս իրեն կատարեալ Եւրոպական կրթութիւն տանք. Եզրօսին օդերու մէջ բերդ շինելու տակին կը նմանի. յիրաւի այնպիսի երիտասարդ մը ընկերութեան մէջէն մինչև յօդս կը

դիկ եղան ; յայսմ մասին իսկապէս մեծագործութիւն-
ներ ըրին , բայց այն մեծագործութիւնը իրենց յաջո-
ղութեան կամ յօժարութեան հետ մարեցաւ գնաց ,
և չ'մարեր ալ , մնանաւորայ օգուտ մը պիտի ելլէր ան-
կէց և ոչ ընդհանուր կրթութիւն :

Երբեմն ազգը ելաւ , և առաւել իր բաղձանքէն
խորհուրդ առնելով քան թէ իր կարողութենէն , 'ի
մեծամեծս ձեռնարկեց . բայց բաղձանքը անկարողու-
թեան առջին շուտով տկարացաւ , որով իր գործքն
ալ : Եւ այսօր ազգը իր աչքին առջին շատ մը տանիկ
աւերակներ ունի անոնց վրայ սգալու :

Երանի թէ այս անցեալը , ներկային օրինակ ըլլար ,
և սահմանադրական Վարչութիւնն ալ երևոյթը չի
պատուելով , ընդհանուրին հաստատուն կրթութեան
մը հիմ դնէր :

Անցեալ դարուն վերջերը երբ Գաղղիա ալ այսպի-
սի կրթութեան մը կարօտ էր , հասարակաց կրթու-
թեան պաշտօնեայ հռչակաւորն Թիւրկօ այս պահան-
ջեց թագաւորական կառավարութենէն :

“ Հասարակաց կրթութեան մէջ բարոյականը մըշ-
“ տընջենաւորել , ժողովուրդը մարդկային ընկերութեան
“ օգտակարութեանց վրայ կրթել , հայրենեաց հետ
“ կապակցութեան իրաւունքը ու պարտականութիւն-
“ ները անոնց ճանչցընել . վերջապէս այնպիսի սկըզ-
“ բունքներու հետ զանոնք ընտելացունել , որ ըլլան
“ բարի զաւակ , խոհեմ հայր , քաջ հաստատակարար գեր-
“ դաստանի , ընտիր քաղաքացի , և տէրութեան հա-
“ ւատարիմ հպատակ : ”

Նաբօլէոն առաջինն ալ , ասոնց ամենն ալ պահան-
ջելով , միանգամայն կը կամէր որ դպրատունները ըլ-
լան , բարոյական և ազգային սկըզբանց ապաստանարան
մը :

Մեր ազգին հիմակուան վիճակին նայելով , բարձ-
րագոյն գիտութիւններէն ազգին օգուտ մը քաղելը
ամենևին չեմ յուսար . մանաւանդ թէ ասիկայ ազգին

Ո՞ր տանիկ ըլլալով, գործքերնիս խիստ կը դիւրին-
նայ. վասն զի այն ժամանակը կըսենք, որ կրթութիւ-
նը ազգին հարստութեանը բաղդատութեամբ պիտի
յառաջ երթայ. բայց աս ալ բացատրութեան կարօտ
է։ Յայտնի է որ ազգային կրթութիւնը մեծամեծ
ծախքերու կը կարօտի. պէտք է դպրատուններ. գըր-
քատուններ, տպարաններ, գործիքներ և վարժապետ-
ներ ունենալ, բայց ասոնց ամենն ալ նախ և յառաջ
ազգային հարստութիւնը պիտի հոգայ. ու դոնէ մեր
ազգին մէջ հարստութիւնը զկրթութիւն ծնանի. բայց
յայսմ մասին ազգը ղարմանալի բացառութեան մը
մէջ է։

Ազգը տէրութեան տուրք, տասանորդ, և գլխա-
հարկ կուտայ. ուրիշ տէրութիւններուն ալ, ազգե-
րը տուրք, տասանորդ և գլխահարկ կուտան. բայց ա-
նոնք իրենց տուածը փոխանակ կրթութեան իրաւունք
մըն ալ ունին իրենց տէրութիւններէն. որով և մեծա-
մեծ կրթողական հաստատութիւններ։ Բայց մեր տէ-
րութիւնը այս իրաւունքը, և անոր հոգն ալ մեզի
պարգեւած է. ուրեմն մենք հիմայ զատ տուրք մըն ալ
ունինք տալու ազգային կրթութեան համար։ Ուրիշ
ազգերը երբ տէրութեան տուրքը կը վճարեն, կառա-
վարութեան ուրիշ ծախք մըն ալ չունին. բայց մեր
տէրութիւնը առանձին ու ներքին կառավարութիւն
մըն ալ շնորհած է մեզի, որուն հոգը ու ծախքն ալ
նմանապէս մեր վրայ է. կան ասոնց նման ուրիշ բա-
ցառութիւններ ալ, որոնք մէկիկ մէկիկ հոս համրելը
անօգուտ է. ինչպէս ազգային ստացուածոց, աղքա-
տանոցաց, հիւանդանոցաց և ուրիշ ասոնց նման բա-
ներու մասնաւոր հոգացողութիւնը ու անոնց ծախքը.
որոնց վրայ կը յաւելունք նաև եկեղեցական իշխա-
նութեան դրամական իրաւունքը։

Այսչափ ծանրութեամբ բեռնաւորեալ ազգ մը,
ի՞նչ կրնայ ընել արդեօք իր կրթութեանը համար.
դժուարինը ասիկայ գտնալն է։ Ուրեմն մասնաւոր մար-

րստութեան հետ զարմանալի կապակցութիւն մը ունի, եթէ չըսենք անբաժանելի. որչափ մէկ ազգ մը հարուստ է այնչափ կրթեալ է, որչափ աղքատ, այնչափ անկիրթ. բայց սոսկ ըսել չենք ուզեր որ որչափ հարուստ կայ այնչափ կրթեալ կայ, կամ որչափ աղքատ, այնչափ անկիրթ. ըսածնիս անհատական հարստութեան ու կրթութեան վրայ չէ, որոնք պատահական բաներ են, և ընդհանուրին ազդեցութիւն մը չունին. մեր ըսածը ազգի մը ընդհանրութեան վրայ է, և որուն համար բացառութիւն մը չեմ կրնար տեսնալ. բոլոր Եւրոպան ծայրէ ՚ի ծայր պտըտէ և կը տեսնես որ ամենէն հարուստը ամենէն կրթեալն է ընդհանրապէս, և ազգի մը մէջ ալ, հարստութիւնը քանի աստիճան ունի, կրթութիւնն ալ այնքան աստիճան ունի. անհատական բացառութիւնները հոս արժէք մը չունին. վասն զի կըսենք միշտ. Անգղիացին շատ կրթեալ ազգ մըն է, միանգամայն շատ ալ հարուստ. թէպէտ Անգղիա կրնայ գտնուիլ, շատ մը հարուստներ որ անկիրթ են, և շատ մը աղքատներ որ կատարեալ կրթութիւն ունին: Բայց այս սանկ ալ ըլլայ. մեր խնդիրը տակաւին չլուծուիր. վասն զի անկէց անմիջապէս նոր խնդիր մը կելլայ. արդեօք հարստութիւնը զկրթութիւն կը ծնանի, թէ կրթութիւնը զհարստութիւն. (միշտ ընդհանուրին նկատմամբ կըսեմ:) Թող իմաստունք այս խնդիրը լուծեն, մեզի այս խնդիրը պէտք է, բայց լուծումը պէտք չէ. որովհետև առջևնիս ունինք գործնական լուծում մը, որ կը ցուցնէ թէ հարստութիւնը ու կրթութիւնը իրարու աջակից պիտի ըլլան ու իրարմէ անբաժանելի: Կրթեալ է ազգ մը, եթէ հարստութիւն չունի, աղքատութիւնը որոշեալ ժամանակի մը մէջ այն կրթութիւնը կը փճացընէ. հարուստ է ազգ մը, անկրթութիւնն ալ նմանապէս որոշեալ ժամանակի մը մէջ զայն. հարստութիւնը կը փճացընէ. ուրեմն մէկը առանց միւսոյն կանգուն չի մնար. և մէկը առանց միւսոյն ազգի մը մէջ ուրիշ բան չէ, բայց եթէ աւելորդ բեռ մը:

րէ․ բայց ինչ կերպով ալ հաստատեալ ու ընկալեալ դաւանինք, միշտ անկէց արդիւնք մը սպասելու իրաւունք պիտի ունենանք։

Բարեբաղդաբար Հայոց Սահմանադրութիւնը ամենեւին արտաքին զգացմունք մը չունի, ոչ պատերազմ պիտի հրատարակէ, ոչ դաշինք գրեր ստորագրէ, ոչ ալ մաքսի կարգադրութիններ պիտի տնօրինէ. իր զգացմունքը բոլորովին ներքին է, այսինքն առանձին գործոց մասնաւոր վարչութիւն մը։ Երբ հոգը կը թեթեւնայ, արդիւնքը կը դիւրիննայ, և երբ կը դիւրիննայ կը բազմանայ։

Անանկ սակաւաթերթ գործքի մը մէջ, անկարելի է որ կարգաւորեալ Սահմանադրութեան մը արդիւնքները մէկիկ մէկիկ կարենանք համրել․ ասիկայ գործոյս պայմանէն վեր է, բայց կրնանք քանի մը կէտերու վըրայ մեր կարծիքը յայտնել․

Անոնց մէջ առաջին տեղը կը բռնէ ազգային կըրթութիւնը․ բայց ի՞նչ պիտի հասկընանք արդեօք ազգային կրթութիւն ըսելով․ գուցէ ազգը փիլիսոփայ, ճարտասան, լեզուագէտ ընել․ գուցէ երկինք և երկիր չափող ու վերացեալ խնդիրներ լուծող իմաստունե՞ր ունենալ․ կամ թէ ամեն մէկը տասը հազարական օրինակ տպուող հարիւրաւոր լրագիրնե՞ր ունենալ, բընութեան անթիւ գաղտնեացը վրայ անթիւ գրքե՞ր գըրել, ու մինչև բեռնակիր մը համետին մէջ մէյմէկ գրքատո՞ւն տեղաւորել․ կամ թէ ուտելու, խմելու, հագնելու, պառկելու ելլալու, կենցաղավարութեան ու ընկերութեան մէջ, Եւրոպական բարակութիւննե՞ր բանեցընել․ ծօ և ջա ըսելու տեղ մըսիւ ու մադամ ըսել․ ասո՞նք են արդեօք ազգային կրթութիւնը․ ամենը մէկտեղ, չէ՛նէ մէկը միայն․ կարծեաց ազատութիւն է, թող ամեն մարդ ըստ իւր ճաշակին, ազգային կըրթութիւն մը սահմանէ, այդ հոգ չէ․ բայց մենք դիտողութիւն մը ունինք ընելու։ Ամենայն ազգաց հանգամանքը քննելով, կը տեսնենք որ կրթութիւնը հա-

խոստանալով սոսկալի անկարգութեամբ մը կըսկըսէր ու կըծաւալէր. այս աղէտալի վիճակը շատ մեծ վնասներ տուաւ Սահմանադրութեան, և այս ճշմարտութեան եթէ բերանները չեն վկայեր, սիրտերը անշուշտ կը վկայեն, եթէ սիրտը ու խիղճը զատ զատ բաներ չեն :

Մենք շատ աղաղակեցինք այս անկարգութեանց դէմ. բայց առժամանակեայ իշխանութեան լռութիւնը, եթէ չըսեմ հաւանութիւնը, նոր քաջալերութիւններ կուտար մեր ոսոխներուն յարձակմանը. մենք ձեռքերնիս արդար դատով մը անզէն էինք, երբ անկարգութիւնը իր անիրաւ դատովը բարձր ՚ի գլուխ կը պարծէր. ուրեմն թող ազգը վկայ ըլլայ Սահմանադրութեան ինչ յառաջաբանութեամբ իրեն ներկայանալուն. և բնաւ չզարմանայ երբ անիկայ շատերուն կասկածելի երևցաւ :

Բայց անցածը անցած է, հիմայ ազգը ունի իր աշխարհական օրինաւոր իշխանութիւնները, որոնց առաջին գործողութիւնը պիտի ըլլայ հարկաւ Սահմանադրութեան ամեն յօդուածոց պատշաճեալ օրէնքները սահմանել, վճռել, և հրատարակել. այս օրէնքներէն միայն կախում ունի Սահմանադրութեան բարոյական ընդունելութիւնը. եթէ ուրիշ կերպ մտմըտանք, անշուշտ մենք զմեզ կը խաբենք. և կը խաբուինք, և կը նմանինք ծառի մը, որ շատ ծաղիկներ կը բանայ, բայց պտուղ չ՚տար :

## ԳԼՈՒԽ ԺԸ.

### Սահմանադրութեան օրէնքները :

Մինչև հիմայ ինչ որ խօսեցանք, Սահմանադրութեան բարոյապէս հաստատութեան և ընդունելութեան վրայ էր, և ոչ պաշտօնականին, որն որ արդէն օրինաւորապէս հաստատեալ, իր գործքը կը կատա-

թեամբ լմնցուց, ուրեմն այս առժամանակեայ միջոցը այդչափ անհոգ ըլլալու միջոց մը չէր ։

Եւ արդարև ինչպիսի դժուարին միջոց մըն է այսպիսի ժամանակը, ուր հին իշխանութիւնը դադրած է, ու նորը հաստատուած չէ. ուր հին օրէնքները վերցուած են, ու նորերը տակաւին անյայտ ։

Ի՞նչ դժուարին միջոց, երբ սա սահմանադրական. բայց երբեմն վնասակար. սկզբունքները բնականաբար երևան կելլան,

Ա. Ան որ օրէնքով արգիլեալ չէ, յանցանք չէ ։

Բ. Օրէնքը յետադարձ զօրութիւն մը չունի ։ Ուր ոչ օրէնք կայ, ոչ իշխանութիւն ։

Ասանկ միջոց մը հարկաւ երկու կարգադրութիւն կրնար պահանջել. կամ հին օրէնքները անխախտ պահել, մինչև որ նորերը հաստատուին, կամ եթէ աս կայ անկարելի էր, առժամանակեայ օրէնքներ հաստատել մինչև որ նորերը անոնց փոխանակեն ։

Այս երկու զգուշութիւնն ալ չըրին, կամ չկրցան ընել մեր առժամանակեայ իշխանութիւնները, և ասոր հետևութիւնները Սահմանադրութեան ծանր նըստաւ ։

Ամեն մարդ սկսաւ Սահմանադրութեան կերպ մը մեկնութիւն տալ և զանիկայ ըստ իւր քմացը գործածել. օրէնք չկար որ զսպեր. չեմ կրնար երկարել այս ողբալի վիճակին վրայ, այսչափ միայն կը զրուցեմ որ, մինչև անգամ բնութիւնը իր բոլոր մերկութեամբը անմեղութեան ներկայացընելով իբրև Սահմանադրութեան սքանչելիք մը պանծացողներ եղան, և շատերը կարծեցին որ, այս է Սահմանադրութիւնը. և ասոնք են իր արդիւնքները ։ Եւ իրաւունք ալ ունէին, վասն զի այս ամեն անկարգութիւնները յանուն Սահմանադրութեան կը գործուէին, և եթէ ծառն ՚ի պտղոյ իւրմէ ճանաչի իրաւ խօսք մըն է, այսպիսի պտուղներ տեսնելով, զարմանալի գաղափար մը կ'ունենայինք Սահմանադրութենէն, որ ամենագեղեցիկ [illegible] կարգ և կանո

ռանց բացառութեան ամէն ներքին հանգամանքները խստիւ քննեցինք. տեսանք և համոզուեցանք, որ եկեղեցական իշխանութիւնը բնաւ և ոչ ազգի մը մէջ այնպիսի դիրք մը ունէր. ինչ որ մեր ազգին մէջ ունի. այս ընդհանուր ճամբայէն զարտուղութիւնը միայն ստիպեց զմեզ, բոլոր սահմանադրական աշխարհէն ընթացքով մերինն ալ քննելու և դատելու. ուրիշներն ալ կրնան ուրիշ կերպ խորհիլ ու գրել. մեր յայտնած դրութեամբը գոնէ երեք հարիւր միլիոն մարդկային էակ կը կառավարուի. գուցէ երեք միլիոն մը կրնայ ուրիշ կերպով կառավարուիլ. բայց գոնէ մինչև գիտնայ որ միայն ինքն է այսպիսի ընթացք մը ունեցող ազգ 'ի մէջ ամենայն լուսաւորեալ ազգաց։

Գանք հիմայ աշխարհական իշխանութեան։ Ասիկայ եկեղեցական իշխանութեան հետ ամենևին չէր կրնար նմանութիւն մը ունենալ, եկեղեցականը իր իշխանութիւնը Քրիստոսէ առած էր. ասիկայ պիտի առնէր ժողովուրդէն, կամ որ նոյն է անոր Սահմանադրութենէն. բայց մինչև որ Սահմանադրութիւն մը հաստատուի, և իր իշխանութիւնները որոշուին բաւական երկար ժամանակ մը պիտի անցնէր. և այս միջոցին ամէն ազգերու սովորութիւն մը եղած էր առժամանակեայ կառավարութիւն մը հաստատելու, նոյնը մեր ազգն ալ ըրաւ։

Ամէն ազգի մէջ, այս միջոցը մեծ ազդեցութիւն մը կունենայ իր ապագային, և մերինն ալ ունեցաւ նոյն, և որն որ բաւական երկար ալ ըլլալով, մեծագոյն ազդեցութիւններ ալ ունեցաւ, չենք կարծեր որ մեր առժամանակեայ կառավարութիւնները ասիկայ նշմարած ըլլան։

Շատ ազգերու մէջ, այս առժամանակեայ ըսուած միջոցը, մեծամեծ և անակնկալ փոփոխութիւններու առիթ եղաւ. երբեմն նաև նոյն իսկ յեղափոխութեան հակառակ վախճան մըն ալ ունեցաւ, և գործը ռամկապետութենէն սկսելով, կատարեալ ինքնակալու-

նութերուն վրայ ով ինչ ուզէ գրէ , միայն ինքը բան մը չ'կրցաւ գրել. և ինքը չ'կրնար արդարանալ որ տակաւին այսպիսի իշխանութիւն մը չունէր , ասիկայ եկեղեցւոյ հաստատութեան օրէն իրենց տրուած էր. չեն կրնար արդարանալ ըսելով որ ինչ ընենք , մեզի չեն հնազանդիր. ես հնազանդողներէն եմ, բայց չգիտեմ որ ինչո՞ւ պիտի հնազանդիմ. ասիկայ ցուցընող մը չեղաւ ։

Ուրեմն կուզէ՞ ազգը Սահմանադրութեան հաստատութիւնը , յառաջ երթալը ու ամենուն ընդունելի ըլլալը , թող նախ եկեղեցական գերագոյն իշխանութեան ու անոր կրօնական մասը ընդունելի՛ ընէ , վաւերացընել և հրամայել տայ. այն ժամանակը կը տեսնուի ինչպէս խղճերը կը հանդարտին , ինչպէս տարակոյսները կը փարատին , ինչպէս Սահմանադրութիւնը ընդհանուր և ինքնայօժար ընդունելութիւն մը կը գտնայ ։

Ասիկայ եթէ սահմանադրական գործադրութեան պակասութիւնն է , թող անձապարեն այս պակասութիւնը վայրկեան մը յառաջ լեցունելու , որովհետև ամեն սահմանադրական դրութիւն ասոր դէմ չ'կենալէն ետև , նաև այս կը պահանջեն. անկարելութիւն մըն է , ցաւօք սրտի կը յայտնեմ որ ան ժամանակը Սահմանադրութիւնը ազգին ներքին զգացմանը վրայ հաստատուն հիմ մը չունի , այսինքն թէ , չէ Սահմանադրութիւն մը ընկալեալ, այլ Սահմանադրութիւն մը հրամայեալ. բոլոր իր հետևութիւններովը ։

Չգիտեմ որ այս գլուխը կարդացողները , չափազանց կրօնասիրութեան կասկած մը կրնա՞ն ունենալ մեր վրայ. եթէ ասանկ պատուոյ մը արժանանայինք , հարկ չէր ըլլար մեզի ըսելու թէ՝ եթէ կրօնասիրութիւնը մէկու մը այսպիսի խորհուրդներ կարեր թելադրել, գոնէ մեր շարժառիթը այս չեղաւ. մենք ուրիշ աղբիւրէ մը առինք մեր այս դատողութիւնը ։

Մեզմէ շատ մեծ , շատ բարեկարգ , շատ երջանիկ շատ փիլիսոփայ և շատ սահմանադրական ազգերուն ա-

հասութենէն վեր խնդիրներ պիտի ներկայանան․ բայց ո՞վ պիտի վճռէ խնդիրին իր ձեռնհասութենէն վեր ըլլալը, նոյն իսկ ինքը․ աս ալ դասենք զարմանալի կարողութեանց կարգը ։

Վերջապէս հարկ պիտի ըլլայ Կաթողիկոսին դիմել, դուցէ հարիւր տարին անգամ մը․ բայց Սահմանադրութիւնը միայն Կաթողիկոսին դիմել մը կը հրամայէ, բայց իր որոշմանցը հնազանդութեան պարտաւորութիւնը․ ասոր տեղը Սահմանադրութեան մէջը կատարեալ դատարկութիւն մը կայ․ որ եթէ բնութեան մէջ դատարկութիւն գտնուելուն չ՚համոզողներ դեռ կան, անկարելի է որ ասով չ՚համոզուին ։

Ու չ՚պիտի ըսեմ որ վերէն ՚ի վար իրարմէ անկախ այսպիսի եկեղեցական իշխանութիւն մը անկարելի է, բայց այս պիտի ըսեմ համարձակ որ, այս ձեւ իշխանութիւն մը ոչ տեղ մը տեսած եմ, եւ ոչ տեղ մը լըսած․ ոչ կրնամ ըմբռնել եւ ոչ ալ համոզուիլ, եւ ոչ ալ խիղճս հանդարտեցընել․ եւ եթէ ազգը ես ըլլայի, հինգ տարի ետքը Սահմանադրութեան վերաքննութեան ժողովքին նախ եւ յառաջ այս յօդուածը կ՚առաջարկէի ։

Բայց ի՞նչ է այսօրուան որս այսպիսի սկզբան մը հետեւութիւնները․ այս է որ հասկածոտ խղճերը բընաւ չեն հանդարտիր․ եկեղեցական մը կ՚ըլլայ, Սահմանադրութիւնը երկնաչափ կը բարձրացընէ․ միւսը ՚ի դժոխս կ՚իջեցընէ, ժողովուրդը կը խռովի, կը վըրդովի, կը վիճէ ու կը կռուի․ եւ եկեղեցական իշխանութիւնը ձայն մը չ՚հաներ ։ Նոյն իսկ Սահմանադրութեամբ հաստատեալն ալ, այնչափ չարաչար գործողութեանց, գրուածոց ու գրեանց մէջ, տակաւին իր ձայնը հանելու կարեւորութիւն մը չ՚տեսաւ․ Թողուց որ ամեն մարդ եկեղեցականը բռնաբարէ, ամեն գիրք կարդայ․ եւ ինք չ՚ցուցուց թէ, ժողովուրդը որչափ իրաւունք միայն ունի եկեղեցւոյ առջին ու որ գիրքը կարդալու է ու որը չ՚կարդալու․ Թողուց որ կրօնական

«Համագումար ժողով կը կազմէ, Կոստանդնուպոլսո
«գտնուող Եպիսկոպոսները, եկեղեցեաց Քարոզիչ
«Վարդապետները, Երէցներն ու Աթոռակալ-
«ները, և թէ հարկ ըլլայ նաև շրջակայ գաւառաց
«Առաջնորդները հրաւիրելով. եթէ եկեղեցական Հա-
«մագումար ժողովն ալ իր ձեռնհասութենէն վեր գա-
«տէ, այն ժամանակ ընդհանրական Կաթողիկոսին կը
«դիմէ ստորագրեալ տեղեկագրով։»

Բայց մենք կ'ապացուցանենք, որ ասիկայ եկեղե-ցական գերագոյն իշխանութեան ամենևին իշխանու-թիւն մը չ'տալէն ետև, իր ամեն իշխանութիւններն ալ առնել ու քանի մը Տէրտէրներու յանձնելէն բը-նաւ ուրիշ բան մը չէ։

Կրօնական ժողովը, որ այսօրուան օրս մէկ երկու Ե-պիսկոպոս, մէկ երկու Վարդապետ և շատ մը Տէր-տէրներէ կը բաղկանայ, ուր Արհի Եպիսկոպոսը ու Վարդապետը այսօր նուազ ձայն ունին քան զՏէրտէ-րը և. վասն զի բոլորն ալ Տէրտէրներէ ալ կրնայ բաղկա-նալ. ուր Տէրտէրը պատրիարք կը չինէ, ու վարդապետ կը կարգէ, (զարմանալի ռամկապետական եկեղեցա-կան իշխանութիւն) ինչու պիտի [illegible] կրօնական կարևոր խնդիր մըն ալ չ'կարենայ լուծել; և ո՞վ կրնայ մեղի համոզել որ այսպիսի խնդիր մը լուծել չ'պիտի կարծէ.

Բայց եթէ չ'կրնայ, ուրիշ շատ մը եկեղեցական-ներ ալ իրեն օգնութեան պիտի կանչէ. զարմանալի կարողութիւն, ուր կրնալը ու չ'կրնալը, իրեն ազատ կամացը յանձնուած է. կրօնական ժողովը բաւական է որ ես կրնամ ըսէ, և ամեն խնդիր լուծուած է. կրնա՞ն հարիւրաւոր Եպիսկոպոսներ և ծայրագոյն Վար-դապետներ այսպիսի իշխանութիւն մը տալ իրենց ձեռ-նադրած ու իրենց հրամանին տակ եղող քանի մը Տէր-տէրի. և եթէ կրնան տալ ո՞ր եկեղեցական կանոնով ասիկայ պիտի վաւերացընեն. բայց թող ուրիշ աստի-ճանաւորներն ալ անոնց օգնութեան գան ու Համա-գումար ժողովք մը կազմեն. բայց ասոր ալ իր ձեռն

այսպիսի զգացում մը որ նոյն իսկ Բրիտանիա բերնէն ու իր փառդապետութիւններէն կը բղխի . ամենեւին ոչ . կրնա՞նք պահանջել այսպիսի խղճերը , ապացուցանելով որ աշխարհային երջանկութիւնը երկնից արքայութեան դուռը իր առջին չ'գոցեր , մենք ոչ երբեք : բայց եկեղեցական գերագոյն իշխանութիւնը , այո . բայց պէտք է որ , իրաց մինչեւ նախասկիզբը ելլանք : Հայոց եկեղեցական իշխանութիւնը յայսմ մասին զարմանալի երեւոյթ մը կը ցուցընէ մեզի , այնչափ զարմանալի , որչափ ուրիշ որ եւ իցէ եկեղեցեաց մէջ չ'տեսնուած երեւոյթ մը :

Հոս կայ գերագոյն իշխանութիւն մը : Ընդհանրական Կաթողիկոս մը եւ սուրբ ժողով մը . բայց այս գերագոյն իշխանութիւնը իր եկեղեցւոյն ինչպէս կը կառավարէ ամենեւին գաղափար մը չունինք . կամ թէ պանդուխտ գերեզմաննոցի քահանայէ մինչեւ 'ի Պատրիարք ինչ յարաբերութիւն ունին իրեն հետ , ամենեւին չենք կրնար երեւակայել :

Հայոց եկեղեցին իրեն գերագոյն գլուխ մը ունեցած ատեն , միւս եկեղեցական ամեն պաշտօնատէրերը իրմէ բոլորովին անկախ կ'երեւին . նա մանաւանդ թէ անոր դէմ խօսող եւ գործող եկեղեցականներ ալ կը գտնուին պաշտօնի մէջ ու ինքը ձայն չ'հաներ . ոմն այսպէս կը տրամադրէ եւ ոմն այնպէս , ինքը հոգ չըներ . եկեղեցական նոր նոր իշխանութիւններ կը կազմուին , ինքը անփոյթ կ'ըլլայ . ի՜նչ զարմանալի երեւոյթ . Կոստանդնուպոլիս կը հաստատուի եկեղեցական ժողովք մը , ուր քանի մը Տէրտէր , Պատրիարքաց ու Արքեպիսկոպոսաց վիճակը կ'որոշեն , եւ անոնց դատաւոր կ'ըլլան , ինքը լուռ կը կենայ :

Գուցէ Սահմանադրութեան քսանըիններորդ յօդուածին մէջն է իր գերագոյն իշխանութիւնը ուր կ'ըսէ .

« Կրօնական ժողովը երբ չ'կարենայ ինքնին լուծել
« զուտ կրօնական կարեւոր խնդիր մը , եկեղեցական

ստոյգ քաղաքավարութիւն մը պիտի տիրէր ։

Ոմանք կարծեցին թէ հպատակութեան պայմաններէն դուրս ելլելով տէրութեան ազգին վրայ ունեցած վստահութիւնը կասկածի պիտի փոխուի . ուրիշները պնդեցին թէ , տէրութիւնը մանաւանդ թէ կը քաջալերէր այսպիսի ձեռնարկութիւն մը որ իրեն քաղաքակիրթ ազգ մը պիտի նուիրէր . ոմանք կարծեցին թէ , ազգը երեւակայական ցնորքներու ետեւէն ըլլալով իր հիմնական նիւթական բարեբաղդութիւններն ալ անոր պիտի զոհէ , ուրիշները պնդեցին որ ազգը խիստ կարելի ու օգտակար նորոգութիւններով խիստ կարելի և ապահով երջանկութիւններ պիտի ունենայ ։

Բայց ալ ինչ երկարենք , իրարու հակառակ ասանկ անթիւ կարծիքներ ելան որոնք շատերուն միտքը պղտորեցին , և շատերուն սիրտը խռովեցին , և զարմանալին այս է որ , այս տարաձայն իրարու դէմ եղող դատողութիւնները ամենն ալ իրենց ստուգութիւնները ու իրենց կարելիութիւնները ունէին , ու ամեն մարդ իր կարծեացը համեմատ ապացոյցներ ալ կրնալ գտնալ երբ որ ուզէ , ու որչափ որ կամի ։

Բայց ասոնց ամենն ալ սահմանադրական դրութեան մը բնական հետեւութիւնները կամ պակասութիւննե՞րն էին արդեօք . չեմ կրնար այո՛ մը ըսել առանց խիղճս բռնաբարելու ։

Բայց եթէ հարցուէր թէ , ասոնք սահմանադրական դրութեան մը պակասաւոր գործադրութեան հետեւութիւննե՞րն էին արդեօք . այն ժամանակը խիղճս զիս կը բռնաբարէր այո՛ մը ըսել և թերեւ երիցս անգամ այո՛ ։

Նախ ազգին եկեղեցական իշխանութիւնը , Սահմանադրութեան նկատմամբ , անհանգիստ խղճերու ապահովութիւն մը չ՚կրցաւ տալ , գուցէ կըսեմ չուզեց տալ . բայց ազգը կրնայ ունենալ շատ մը անհատներ , որոնք ամեն աշխարհային երջանկութիւնները , երկնից արքայութեան հետ չեն փոխեր . կրնա՞նք բռնաբարել

ւէրը, ասկէց բնականաբար կը հետևի որ ընդհանուր ընդունելութիւն մըն ալ չ՚պիտի գտնար։

Եթէ ասիկայ ազգին մէջ տակաւին նորեկ գաղափար մըն էր, ինչպէս ամէն նոր դրութիւն, ան ալ ունեցաւ իր ախոյեանները ու իր նահատակները։ Չափազանց գովաբաններուն դէմ չափազանց պարսաւողներ ալ ելան և այս կարծեաց զանազանութիւնը, հասարակութեան մտքին մէջ զանազան տպաւորութիւններ ըրաւ։

Ոմանք կարծեցին թէ այսպիսի ազատական դրութիւն մը, անշուշտ ազգին կրօնքը ու բարոյականը պիտի ապականէր, ուրիշները պնդեցին թէ, կրօնքը Սահմանադրութեամբ իր անօգուտ յաւելուածներէն զըտուելով, և բարոյականը իր նուաստացուցիչ բռնութիւններէն մաքրուելով առաւել պիտի պայծառանան։ Ոմանք կարծեցին որ, ասով մեծ ու պզտիկ հաւասար ըլլալով, բնական ակնածութիւններն ալ պիտի անհետանան և լրբութեան տեղի տան. ուրիշները պնդեցին թէ, ակնածութիւն և մեծարանք ասկէց ետև պարտաւորութիւն մը պիտի ըլլայ, բայց արժանաւորութեան և ոչ թէ բռնութեան. ոմանք կարծեցին թէ, ազգին յատակին դիրտը երեսը պիտի ելլար և իր պարզութիւնը պղտորէր. ուրիշները պնդեցին թէ ազգին յատակէն անծանօթ գեղեցկութիւններ պիտի դուրս ելլան և մարգարիտներ գտնուին։

Ոմանք կարծեցին որ ամէն մարդ ինքզինքը կարդալու գրելու տալով, ապրուստին հոգալու ժամանակ պիտի չունենան և թշուառանան, այլք պնդեցին թէ բեռնակիրները փիլիսոփայ պիտի ըլլան ու աղքատները մէյմէկ Ռօշիլտ։

Ոմանք կարծեցին թէ անզուսպ ազատութեամբ մը երկու սեռին ալ ամօթն ու պատկառանքը պիտի վերնար, և ազգին պարկեշտութիւնը ոչնչանար, այլք պնդեցին թէ ամէն մարդ իր պատիւը պիտի ճանչնար և պահպանէր, որով սուտ ամօթխածութեան մը տեղ

կեցութեան մէջ մեյմէկ կղզի էին ծովերով և ժայռե-րով բաժանուած, հիմա ամենուն աչքը ամենուն վրայ է, Եւրոպան մեր մէջն է և մենք Եւրոպայի մէջ։ Մարդկային ընկերութեան մէջ հիմա ամէն ազգ իր աստիճանը ունի, որչափ վարը կը գտնուի մէկ ազգ մը, այնչափ իր վրան կոխողը ու վեր ելլողը շատ կ՚ըլլայ։

Անցեալին մէջ ինչ աղէկ բաներ կային. անոնք հետե-ւինք. ասիկայ անցեալը պախարակելով ու խայտա-ռակելով չըլլար այլ քննելով, և անաչառ քննիչի մը յատկութիւնները ունենալով. քննենք ուրեմն ու ընտրենք։

Ապագային պատրաստենք քաղաքականութեան ճամ-բան մաքրելով՝ նախապաշարմունքէ. բայց կարողութիւն ունենանք նախապաշարում մը ստուգութենէն որոշելու, փախչինք անկարելիութիւններէ, որոնք հասարակօրէն բանաստեղծական երեւակայութիւններ են, քան թէ շօշափելի ճշմարտութիւններ։

Եւ մանաւանդ ամէնէն աւելի զգուշանանք շատա-խօսական բանութիւններէ, որոնք բաղձանքի վերջնամամբ ալ չեն կրնար երբեք արդարանալ։

Եւ այսպիսի խոհեմական ընթացքէ մը միայն կրնանք յուսալ, բարգաւաճեալ Սահմանադրութեան հաստատութիւնը և յառաջանալը. քան թէ պաշտօնական կարգադրութիւններէ, որոնք կ՚ընտրուին, բայց չեն համոզեր։

## ԳԼՈՒԽ Ժ.

### Թէ ինչ ընդունելութիւն գտաւ Հայ ազգին մէջ Սահմանադրութիւնը։

Որովհետեւ յայտնի եղաւ որ, Հայ ազգին ընդհան-րութիւնը առաջուրէն սահմանադրական սովորութիւններ չունէր, և այս դրութիւնը մանաւանդ թէ ժամանակի հարկ մըն էր, և փոքրագոյն մասին հրա-

Ազգ մը որ առաջին անգամ կելլայ ինքզինքը կառավարելու երբ ուրիշին կառավարութեան ամենանուրբ արուեստը չ'գիտեր, այս գլխաւոր պակասութիւնը գոնէ խոհեմութեամբ որ չ'լեցընէ, մեծ վտանգներու և խորխորատներու մէջ կրնայ իյնալ։ Ասոնց ամենէն վտանգաւորը շտապողական դրութիւնը և չափազանց բաղձանքը կը համարիմ. գիտեմ որ ազգը ամենէն առաջ իր առջևը ահռելի դատարկութիւն մը պիտի գտնայ. բայց եթէ այս դատարկութիւնը լեցընելու համար, ձեռքին եկածը մէջը նետէ, ետքը դարձեալ պիտի ձեռնունայն մնայ, և վրան առանց շէնքի հիմ մը պիտի ունենայ, որ դիւրաւ կ'անհետանայ. ընդհակառակն եթէ ձեռքի ունեցածը խարբալէ, պիտանին անպիտանէն, վնասակարը օգտակարէն, և պահելուն նետուելուէն որոշէ, թէ վիհը կրնայ լեցունել, և թէ վրան իր վիճակին յարմար շէնք մը շինել։

Ահա այս միտքով էր որ Նաբոլէոն երրորդ ասկէ մէկ երկու տարի յառաջ ըսաւ պատգամաւորաց սենեկին.

“ Կանուած դարերնիս ճանչնալով, անցեալին մէջ
” ինչ աղէկ բաներ կայ անոնք հետ առնելով, ապա-
“ գայն պատրաստելով, ու առջևնիս բացուած քաղա-
“ քակրթութեան ճամբան, մաքրելով թէ նախապա-
“ շարմունքներէ, որ անոր արգելք կ'ըլլան ու թէ ան-
“ կարելիութիւններէ որ անոր կը վնասեն, ահա ասոնց-
“ մով միայն մեր որդւոցը խաղաղ և յաջող օրերու
“ ժառանգութիւն մը կրնանք նուիրել. ”

Ութը միլիոն քուէով ընտրուած ու ութը հարիւր հազար սուիններու հրամայող ինքնակալ մը ահա այսպէս խօսեցաւ աշխարհի առջին. որ է սքանչելի խրատ մը նաև քաղաքակրթութեան մէջ աստիճանաբար և զգուշութեամբ յառաջանալու։

Ուրեմն դարերնիս ճանչնանք. ան ժամանակները չենք ուր ազգերը ու տէրութիւնները մարդկային ըն-

երկու ճամբայ միայն բաց կը գտնոյ, որուն մէկը կը տանի 'ի միապետութիւն և միւսը 'ի Սահմանադրութիւն. միապետականը տեղէն չշարժեցաւ, Սահմանադրականը առաջարկեց և մնաց իր ճամբան:

Այս ամենը յայտնի կը վկայէ, որ Սահմանադրութիւնը ազգին հիմնական վիճակին բնական մէկ հետեւութիւնն էր կամ տրամաբանական զարգացութիւնը. և ոչ թէ ազգին կամքը.

Նոյն Հայուն Սահմանադրութիւնը կատարուած գործքի մը իրաւունքը միայն ունի և ոչ թէ ազգային կամաց արտայայտութիւնը. Որովհետև եթէ յառաջները ժողովրդեան մէկ մասը կամ նաև մէկ անհատ մը ազգը կրնար ներկայացընել, Սահմանադրական դրութիւն մը ատիկայ երբէք չ'կրնար ընդունիլ. այս լեզուին մէջ ազգ բառը պէտք է որ ազգին ընդհանրութիւնը նշանակէ և ոչ այլ ինչ.

Հայուն Սահմանադրութիւնը 'ի սկզբան այս յատկութիւնը չունեցաւ և մինչև հիմայ ալ չունի. այսինքն եթէ 'ի պաշտօնէ ունի, սահմանադրապէս չունի, որովհետև Սահմանադրութիւնը ընդհանուրին նկատմամբ առաւել հրամայուած է քան թէ ընդունուած. բայց գործադրութեամբ այսինքն խոհական գործադրութեամբ մը, որոշեալ ժամանակի մը մէջ կրնայ ընդունուիլ, և հրամայականը ընդունելութեան փոխուիլ: Ու զուտ սահմանադրական մը, անոր հաստատութիւնը չէ թէ հրամաններու և հրովարտակներու մէջ կը տեսնայ, այլ ազգէն գտած ընդհանուր ընդունելութեան մէջ. որ է ամեն Սահմանադրութեանց համար մի միայն խարիսխ հաստատութեան:

Ուստի մեծապէս կը սխալին ամեն անոնք որոնք կը կարծեն թէ հրամայեալ և հաստատեալ Սահմանադրութիւն մը ունենալով, ազգը անմիջապէս Սահմանադրական կ'ըլլայ. տար և անոր մէջը մեծ վիհ մը կայ, ուր չիյնալու համար մեծամեծ զգուշութիւններ պէտք են:

րագոյն տիրոջ մը պաշտպանութեան տակ մտած էին։

Այսով անշուշտ նոր նոր պարտաւորութիւններ պի-
տի ծագէին թէ իշխանութեանց և թէ ժողովրդեան,
որն որ եկեղեցական իշխանութիւնը բնաւ չ'ճանչցաւ,
աշխարհականը քիչ մը ճանչցաւ, ժողովուրդը ամենէն
շատ ճանչցաւ։

Թանզիմաթէն ետքն ալ եկեղեցական իշխանութիւնը
իր զօրութիւնը, իր պատիւը և իր ազդեցութիւնը չէ թէ
իր կրթութեան և առաքինութեան մէջ. այլ մեծա-
մեծներուն դռները փնտռեց, որոնք արդէն տասնըմէկ
ժամու հասած ու կէս մը գացուած էին։ Մեծամեծ-
ները հակըցան և աճապարեցին, և արտաքին ձևեր-
նին պահելով իրենք եղան առաջին, մեծամեծ ծախ-
քերով իրենց զաւակունքը ուսմանց, գիտութեանց և
լեզուաց մէջ կրթելու, ժողովրդեան զաւակաց հա-
մար ալ բաւական պայծառ դպրատուններ հաստատե-
լու, զաւակնին կամ հոգեզաւակնին Եւրոպա խաւրե-
լու, արուեստներ ու ճարտարութիւններ սորվեցու-
նելու. տիրապետութիւնն ալ ընդհանուրէն մասնա-
ւորներու անցաւ և իր բռնութիւնը կորսնցուց, որով-
հետև ալ սկզբունք մը չէր, այլ պատահում։

Ժողովուրդը ամենէն ետեւ զգաց այս փոփոխու-
թիւնը, որովհետև իր բոլորտիքը, ամեն օր ամեն բան
իրեն կը յիշեցընէր իր նոր վիճակը. մեծ բռնութեան
զսպանակը արդէն զինքը սեղմելէ մեղմացած էր, երկ-
րորդականները գրեթէ անզգալի էին, ընդդիմութիւն
մը փորձեց. յաջողեցաւ. դարձեալ փորձեց, դարձ-
եալ յաջողեցաւ. և իր ազատութիւնը շօշափեց։

Հոս ազգը ունեցաւ տարտամութեան միջոց մը որ
իր նոր վիճակին բնական հետևութիւնն էր. եկեղե-
ցական իշխանութիւնը իր յենարանը կորսնցուցած էր.
աշխարհականը իր զօրութիւնը, ժողովուրդը իր իրա-
ւունքը ճանչցած էր բայց չէր վաւերացուցած, այսին-
քըն կատարեալ տարտամութեան վիճակ մը։ Երբոր
ժողովուրդ մը այսպիսի վիճակ մը կը հասնի իր առջին

Ու պէտքը չէ երկարել գիտնալու համար որ այսպիսի տիրապետութիւն մը եկեղեցական կամ աշխարհական իշխանութեանց մէջ ինչպէս կը բաժանուէր. ինչպէս մէկը կամ միւսը կը տիրապետէր, ազգին համար ինչ հետեւութիւններ կունենար, ասոնք ժամանակին պարագայներէն յառաջ գալու պատահմունքներ էին. զորոնք պատմութիւնը թող արձանագրէ, մեր նպատակին համար բաւական է գիտնալ, որ ազգը կարեւոր բայց անկարգ իշխանութեամբ մը տիրապետուած էր:

Ազգը դարերով այս ձեւ իշխանութեան պատահական աղէկութեանց ու գէշութեանց անուոյն մէջ շատ մը պտոյտներ ընելէն ետեւ, յանկարծակի վրայ հասաւ Օսմանեան տէրութեան թանզիմաթը, որով չէ թէ ամեն ազգ, այլ մինչեւ ամեն անհատ իր գոյութեան ու երջանկութեան ապահովութիւնները կ՚առնար. ասիկայ տէրութեան ու իր հպատակաց մէջ գտնուած ամեն ամբարտակները մէկէն 'ի մէկ տապալեց. առաջին անգամ անհատները զգացին որ տէրութեան մը հպատակ են, եւ ոչ թէ կանուխ եղող ու իշխողին դերի. իրենց անձը, ստացուածքը, պատիւը ու կրօնքը, եթէ կատարելապէս չէ, գոնէ բաւականապէս երաշխաւորեալ: Այն օրը որ ազգերը տէրութեան հետ ուղղակի յարաբերութիւն ունեցան, ան օրը զերենք յիրաւի կամ յանիրաւի տէրութեան առջին ներկայացնող իշխանութիւններուն գործքը լմնցաւ: Ու տէրութիւնը ազգի մը համար ճանչցաւ կրօնք մը, եւ ոչ թէ կրօնքի տեղ անոր պաշտօնեայն, ճանչցաւ ազգի մը համար արդարութիւն պահանջելու իրաւունքը, եւ ոչ թէ անոր տեղ իշխան մը:

Ուրեմն մէկ օրուան մէջ, ազգը եւ իր իշխանութիւնները նոր կացութեան մը մէջ մտան: Ազգին առջեւը ալ այնպիսի վտանգ մը չ՚կար որ ինչ ըլլայ ըլլայ իրեն փրկիչ մը փնտռէ, ազգին իշխանութիւններն ալ՝ ալ իրենց դերերը չունէին, վասն զի ասոնք զօրաւո

ցը հաճոյից գերութիւն՝ ընելու. Նմանապէս Պատրիարք մը, Նմանապէս Առաջնորդ մը, Նմանապէս Քարոզիչ մը։ Եւ կրթութիւն, գիտութիւն, բարի վարուց ու առաքելական պարտաւորութեանց ամենևին փոյթ ընել պէտք չէր. ժամանակին տիրապետը ով էր նէ, ինչ կերպով որ ըլլայ անոր հաճոյանալը առնից ամենուն տեղը կը բռնէր ու կեւեւընար ալ. ալ. եկեղեցական իշխանութիւնը եկեղեցւոյ մէջ չէր. այլ խանի մը, տունի մը ու ամառանոցի մը մէջ էր. և հոն ալ մինչև սպասաւորաց ձեռքը։

Բայց ազգը տակաւին չէր զգար, մանաւանդ թէ ան ժամանակը կարողութիւն և տրամադրութիւն ալ չունէր տակաւին զգալու, իր առջևը առնցմէ մեծ և սարսափելի վտանգներ կային, որով իրենց մտադրութիւնը բոլորովին հոն ամփոփած էր. ինքը տէրութեան մը հպատակ էր, բայց ամենևին ան տէրութեան հետ վերաբերութիւն մը չունէր. հարուածը, միշտ տէրութենէն կընդունէր. շնորհք մը, անիկայ կրնար յուսալ. և երբեմն ալ կ'ընդունէր իր Պատրիարքէն և իր մեծամեծներէն. և ինչպէս ծովը ինկած կամ բոցով շրջապատուած մարդ մը, ալ չ'փնտռէր թէ զինքը փրկողը ինչ ձեռք է, ազգն ալ ըստ ամենայնի այսպէս, բոլորովին անփոյթ էր իր վրայ իշխողաց յատկութիւններէն. ինքն իրեն իշխելու ամենևին յոյս և լոյս մը չունէր. գերութեան վիճակն էր իր վիճակը. որ հասարակօրէն տիրափոխութենէն առաւել վնաս կը տեսնէ քանթէ օգուտ, ազգը ամենևին այսպիսի տրամադրութիւն մը չունէր, և չէր կրնար ալ զանիկայ երևակայել, իբրև կարելի բան մը։

Միւս կողմանէ տիրողները խիստ ապահով էին որ իրենք միշտ պիտի տիրեն, որովհետև նոյն իսկ տէրութիւնը իրենցմէ ուրիշ տիրող չէր ճանչնար, մանաւանդ թէ միշտ զիրենք կը ճանչնար և պիտի ճանչնար. ամենէն ապահով տիրապետութիւն մը, որովհետև պատահում մը չէր, այլ հաստատեալ և վաւերացեալ գոյութիւն մը։

ամէն քրիստոնէի առջին փրկութեան դուռը բաց կը գտանի, բայց քաղաքական կարեւորութիւն մը։ Ասանկ վիճակի մը մէջ, Հայ կղերը ազգին մէջ ստացաւ կամ եղաւ զօրութիւն մը, որ անշուշտ իրեն անձնական արժանեաց արդիւնքը չէր, այլ ինչպէս ըսինք քաղաքական կարեւորութիւն մը։ Ասիկայ ազգին իր օգուտը ըրաւ, բայց կղերին մեծապէս վնասեց. անանկ որ ազգը որ ժամանակ որ անդորրութեան վիճակ մը հանէր, ու արտաքին թշնամիներէն խալըսէր, առջեւը պիտի ունենար (ամենայն նուաղագոյնը ըսենք) անկարգ ու ախտացեալ կղեր մը, որ իր առջի քաղաքական անհրաժեշտ կարեւորութեամբն ալ, ալ չէր կրնար արդարանալ։

Այս յանցանքը ազգին չեղաւ, այլ նոյն իսկ կղերին. որն որ իր բազմադարեայ ամենազօր իշխանութեան ժամանակը, ամենեւին անհոգ եղաւ ինքզինքը կրթելու և իր բարձր աստիճանին արժանի ըլլալու գիտութեամբ և առաքինութեամբ, և որուն ամեն միջոցներն ալ իր ձեռքն ունէր։

Միայն Մխիթար մը եղաւ ասիկայ մտածող, գերագոյն հանճար մը որ ապագայն գուշակեց, բայց իր գըտնուած ապականեալ մթնոլորտին մէջ իր այս սքանչելի խորհուրդը յառաջ տանելու այնչափ յուսահատեցաւ, որ պատշաճ սեպեց օտար երկիր գաղթելու, որով ազգին մատակարարած օգուտը թէպէտ շատ մեծ բայց առաւել կողմնակի եղաւ քան թէ ուղղակի։

Ի՞նչ կընէր ասանկ երջանիկ ժամանակ մը Հայ կըղերը։ Կաթողիկոսները, Պատրիարքները. և ուրիշ աստիճանաւորները վրայ կը պատուէին, եկեղեցական իշխանութիւնը, սարսափելի սրբապղծութիւն, մինչև սուր առաւ իր ձեռքը, մատնութիւն, կաշառք, շըղըքորթութիւն, վերջապէս եօթն մոլութիւնք եօթն աստիճանաց տեղ անցան. Կաթողիկոս մը ամօթ չհամարեցաւ իր ամենաբարձր հոգեւոր իշխանութիւնը, աշխարհական բռնաւորներէն ընդունելու, և անոն-

Բայց թէ ազգը ինչ վիճակի մէջ էր, երբ այս շը-
նորհքն իր վրայ տեղաց, զայն քննենք։

Արդէն հինգ դար յառաջ ազգին քաղաքական իշ-
խանութիւնը իր օրհասական ճգնաժամը հասած էր,
նման կենազրաւ հիւանդի մը որուն հեռաւոր անդամ-
ները պաղելով ու անզգայանալով կենսական զօրու-
թիւնը կէտ մը միայն կ՚ամփոփի, որ դիւրաւ հոգին
աւանդէ, այս իշխանութիւնը Հայաստանին անսահ-
ման տարածութենէն այն վերջին կէտը հասած ու կեդ-
րոնացած էր, Յոյն, Լատին, ու Մահմետական հեղե-
ղաց առջին, ուր և ընկղմեցաւ։

Թագն ինկաւ, գահը կործանեցաւ բայց ազգը մը-
նաց, վասն զի այսպիսի համակործան ջրհեղեղի մը առ-
ջին, իրեն անփոյթ ապաստան մը գտաւ իր կրօնքը, որ
անշուշտ իրեն փրկութեան տապան մը եղաւ։ Ն. ժա-
մանակը ազգը ունեցաւ սա զարմանալի յատկութիւ-
նը, որ թէ աստուածաբանական վերացեալ խնդիրնե-
րէն ծագած վէճերուն և թէ կղերական անկարգու-
թեանց միտ չ՚դնելով փարեցաւ գրկեց իր կրօնքը, երբ
իրմէ մեծ և զօրաւոր ազգերը միայն այս պատճառաւ
պիտի սպառսպուռ կործանէին. այս յատկութիւնը
փրկեց Հայ ազգը, որն որ եթէ ուրիշ տեղ մը կրօնա-
մոլութիւն կ՚անուանուի, Հայ ազգին համար գրեթէ
մեծ ու անհրաժեշտ կարևորութիւն մըն էր, վասն զի
եթէ այնչափ աղետից և թշուառութեանց վրայ կրօ-
նական վէճեր, բաժանմունքներ, և հակառակութիւ-
ներ ալ վրայ գալը, անշուշտ այսօրուան օրս Հայ ազ-
գը միլիոններով չէր համրուէր։

Որչափ ժամանակ որ Հայ ազգին վրայ բռնաւորու-
թիւնը տիրեց, ինքն այս պահպանողական սկզբունքէն
չ՚զատուեցաւ, և ասով միայն կը մեկնուի, այն կրօ-
նական խստութիւնները, որուն ազգը պարտաւորե-
ցաւ ժամանակ ժամանակ ամեն կրօնական նորաձևու-
թեան կամ կրօնափոխութեան դէմ։ Սակայն Հայ կը-
րօնքին վարդապետութիւնը չէր, որովհետև անիկայ

# ԳԼՈՒԽ Թ.

## Հայ ազգին հիմնական վիճակը.

Եւրոպայի քաղաքագիտաց վճռովը, վերը ըսինք որ այն ազգերը միայն Սահմանադրութեան արժանի են, որոնք իրենց իրաւունքը կը ճանչնան և անոնց տէր են։

Մեր ազգը իր իրաւունքը ընդհանրապէս չ'ճանչցաւ և ընդհանրապէս անոր տէր չեղաւ, տէրութիւնը զանիկայ ճանչցաւ և շնորհեց, և մենք անցանք այն սահմանադրականաց կարգը, որոնք փոքրագոյն մասէն կամ ուրիշէ մը կընդունին իրենց Սահմանադրութիւնը և որն որ բացառութիւն մը կոչեցինք։

1856ին Օսմանեան տէրութեան բոլոր Եւրոպայի ներկայացուցած Խաթթը Հիւմայունին մէջ այսպէս գրուած էր.

"Ամեն հասարակութիւն իր վայելած առանձնաշը-
"նորհութիւններն ու արտօնութիւնները որոշեալ
"պայմանաժամի մէջ 'ի քննին առնելով, ժամանակին
"բերմանցը ու քաղաքակրթութեան արդեանցն ու գի-
"տութեանց պահանջած բարեկարգութիւնները խոր-
"հրդածութեամբ պիտի որոշէ, ու Բարձրագոյն Դը-
"րան ներկայացընէ, և Հոգևորական գլխոց շնորհ-
"ուած իշխանութիւնն ու ձեռնհասութիւնը իւրա-
"քանչիւր հասարակութեան ապահովուած վիճակին
"ու նոր դիրքին հետ համաձայնութեան մէջ պիտի
"դրուի։"

Երկու տարիի չափ յառաջ, Դրան արտաքին գործոց վերատեսուչ Ալի բաշային առ Հայոց Պատրիարքարանը յուղարկած հրամանագրին մէջ ալ, այս խօսքերը բառ առ բառ կրկնուած են։

Ահա ուրեմն իրաւունք մը, ճանչցուած, տրուած, ու ընդունուած։ Այս վիճակին մէջ, ազգը օրինաւոր կերպով մը կը ներկայանայ սահմանադրական դրութեան առջին։

տով կը յարի Սահմանադրութեան տեսնելով իր մէկ մասին անով երջանկանալը, քան թէ քանի մը միլիոնին մէկէն տրուած երջանկութեան խոստմունքներովը. այս է նաև բնութեան օրէնքը, ուր աստիճանաբար զարգացութիւն մը միշտ բարեբար է, և յանկարծականը միշտ մահաբեր կամ վնասակար. Նոյն իսկ բժշկութեան օրէնքը, չ'ներէր որ հին սովորութիւն մը. թէև վնասակար ըլլայ, մէկէն 'ի մէկ կը տրուի. և երբ մարմին մը զանազան ախտերով հիւծեալ է, բժիշկք նախ գլխաւորագոյնը կը բժշկեն։

Ուրեմն կարգադրենք ինչ որ հիմայ ձեռքերնուս տակը կայ. հրաւիրենք մի առ մի հեռաւորներն ալ. և հրաւիրելոյ պատիւը տանք անոնց, չ'աճապարենք բայց չ'կայնինք ալ, չ'վախցունենք, բայց խրախուսենք. չ'վիրաւորենք, այլ բժշկենք.

Ահ ինչ գեղեցիկ ապագայ մը հայրենեաց համար, երբ ազգը առանց ներքին դղրդիւններու ու սասանութիւններու, առանց բռնութեան և առանց յուզման, հանդարտաքայլ, բայց ամբողջ, անվնաս, և առոյգ կը հասնի իր երջանկութեան նպատակը. և ըսել կուտայ իրեն համար. Հա՛յ է, ուրեմն երջանիկ է. Որ սիրտ չ'թնդար, ո՞ր աչք չ'խանդաղատիր այսպիսի գեղեցիկ տեսլեան մը ու նաև անոր յուսոյն, ինչո՞ւ ուրեմն այսպիսի ապահով ճամբան կը թողունք, ու դէպ 'ի աճապարանաց վիհերը կը դիմենք. ո՜րչափ անզուսպ են մեր իղձքը, որ սուտերը իբրև իսկական սիւն մը ընդգրկենք ու վար իյնանք կոտրինք։ Բարեխառնենք քիչ մը այս շտապողական փափաքը, և թողունք որ կրթութիւնը, գիտութիւնը և քաղաքավարութիւնն ալ, իրենց գեղեցկութիւնները յուելուն այս հրապուրիչ բառին վրայ, որ է, Սահմանադրութիւն, բառ մը, որ անկրթութեան մէջ իմաստ մը չի կրնար ունենալ։

չէ ։ Եթէ Սահմանադրութիւնը լոյս է, ան ալ իր կանոնն ունի ։ Արեգակն է լուսոյ կեդրոնը, բայց ան ալ բոլոր աշխարհքը մէկ վայրկեանի մէջ չ՚լուսաւորեր․ և մենք բնաւ չենք զարմանար երբ միջօրէան կը հասնինք, ուրիշները դեռ արշալոյսի շամանդաղին մէջն են ։

Կը յուսանք թէ խոհական ընթերցողք այսչափով ալ մեր բսածը կը հասկընան, որ ուրիշ բան չէ բայց եթէ սահմանադրական գործադրութեան աստիճանաբար յառաջանալը ։ Ու համարձակ կ՚ըսենք որ այս կերպով միայն Սահմանադրութիւնը գործնականութեան ընդունակութիւն կրնայ ունենալ․ ապա թէ ոչ առաւել կ՚պլշորկի քան թէ կը գործադրուի ։ Եթէ մեծամեծ ազգութիւններն անգամ նաև զինու զօրութեամբ չեն կրնար իրենց ամեն կարգադրութիւնները անխըտիր ամեն տեղ հաստատել, և գրեթէ ամէնն ալ իրենց բացառութիւններն ունին, պզտիկ ազգ մը ի՞նչպէս իր գրեթէ բարոյական իշխանութեամբը այսչափ բնական ընդդիմութիւնները պիտի նուաճէ․ ի՞նչպէս պիտի իրաւունք ընէ հարիւրաւոր քաղաքներէն եկած բողոքներուն․ ի՞նչպէս պիտի գտնէ միլիոնաւոր վէճերը, ի՞նչպէս պիտի լեցունէ բիւրաւոր կարօտութիւնները, ի՞նչպէս պիտի մխիթարէ անթիւ տառապանք, անհամար յուսահատութիւնները ։ Եթէ կայ կամք մը ասիկայ կատարելու, կա՞յ մարդկային զօրութիւն մըն ալ ասիկայ գլուխ հանելու ։ Ինչո՞ւ խաբենք ինքզինքնիս, և անկարելի բանը կարելի ցուցընենք, միայն մեր ըղձին համեմատ ըլլալուն համար ։

Ես ասանկ մտածողներէն չեմ․ կընդունիմ Սահմանադրութիւնը հաստատեալ, բայց իր ընդհանուր գործադրութիւնը կը սպասեմ քբքև ժամանակի խնդէր ։ Թող կառավարութիւնը կարգադրէ Կոստանդնուպոլիս, գաւառ մը կամ երկուք․ Թող կըթէ անոնց բնակիչները, ծաղկեցընէ, պայծառացընէ, և ճոխացընէ, ուրիշները շուտով կը հետևին ։ Հազար խօսք մէկ օրինակ չ՚արժեր ։ Ու քանի մը միլիոն ժողովուրդ մը առաւել շու-

նադրական էր, և Սահմանադրութեան ճակատը գրըւած էր որ, Ներեսփոխանական Վարչութեան հիմը իրաւանց ու պարտուց սկզբունքն է, (այսինքն որչափ իրաւունք, այնչափ պարտիք.) որ արդարութեան ըն-կզբունքն է. իր ոյժը ձայնից բազմութեան մէջ կը կայանայ, որ օրինաւորութեան սկզբունք է. Ինչպէս ընդունէին ասիկայ իբրև սահմանադրական հրաման մը. երբ իրաւունքը քիչ, ու պարտիքը շատ էր, երբ չէ թէ ձայնից բազմութիւն ունէին այլ ձայն անգամ հանած չէին։

Իբրև եկեղեցակա՞ն հրաման, երբ քանի մը Եպիսկոպոս, Վարդապետ, կամ Տէրտէրներու ժողովք մը, եկեղեցին չէր կրնար ներկայացընել, և երբ եկեղեցւոյն գլուխը լուռ կը կենար, և զինքը ներկայացունելու համար այսպիսի ժողովք մը կարգած չէր։

Ո՛նչպէս պիտի ընդունէին ուրեմն. անշուշտ իբրև իրենցմէ վերնագոյն զօրութեան մը հրամանը. ընդունին, ընդունինք, և դէմ չ'կենանք։

Հաստատեալ իշխանութեան մը չ'հնազանդիլը, ամեն օրինաց և քաղաքականութեան դէմ է. քաւ լիցի, ազգս այսպիսի անհնազանդութեան մը մէջ տեսնել, կամ անոր առաջնորդել, սանկ մտածմունք մը մեզնէ այնչափ հեռու է որչափ հաստատուն աստղերը երկրէն։

Թող Սահմանադրութիւնը մնայ ուրեմն յաւիտեան իբրև սկզբունք մը, բայց նորոր գործադրըւելու գայ այնչափ պարտիք պահանջուի ժողովրդենէն որչափ որ իրենց հիմակուան կարողութիւնը կը տանի և որչափ որ իրաւունք իրենց տրուած է. և որ ժամանակ որ ժողովուրդը հաւասար իրաւունք և կարողութիւն ունենայ այն ժամանակ հաւասար պարտիք ալ պահանջուին։ Թող սաստիկ սահմանադրականները քիչ մը ներողամտութեամբ վարուին գաւառականներուն հետ, և չ'զարմանան թէ ինչու Վանը կամ Մուշը իրենց հետ յառաջադիմութեան ընթացակից

Սակայն նոյն իսկ Սահմանադրութիւնը կ'ապացուցանէ, ներքին և արտաքին ինչ պատճառաւ ալ ըլլայ, տեղ մը քանի մը հազար հայերու հարիւր Երեսփոխանութիւն տալով, և տեղ մըն ալ գոնէ երկուք ու կէս միլիոն հայու, միայն քառասուն. որով կարծես թէ հայը հայէն իրաւանց զանազանութիւն մը ունի: Եթէ բոլոր ազգը, Սահմանադրական կարգադրութեանց մասնակից ըլլալու կարողութիւնը ունենար, անշուշտ այսպիսի անհաւասար Երեսփոխանութեան մը չէր արժանանար, ուր գաւառական Երեսփոխանութիւնը, ժողովքի մը մէջ գուցէ երբէք մեծագոյն մաս մը չ'կրնալով կազմել, միշտ իբրև հպատակեալ մը պիտի համարուի ազգին փոքրագոյն մասին մեծագոյն Երեսփոխանութեանը աչքին, որն որ զուտ սահմանական դրութիւն մը չ'կրնար արդարացընել. բայց մեր մէջը, ասիկայ իր պատճառը ունի, ինչպէս նաև իր բացառութիւնները:

Մենք ըսինք, բոլոր աշխարհքը մեզի հետ կ'ըսէ և նոյն իսկ Սահմանադրութիւնն ալ ըսաւ թէ, իրաւունք և պարտք իրարմէ անբաժանելի են. եթէ այս այսպէս է ինչպէս կրնայ ըլլալ որ մէկուն նուազ իրաւունք տալով շատ մը պարտականութիւններ պահանջուի. և Փարիզ, Լոնտոն, Վենետիկ, Կոստանդնուպոլիս, և այլուր կրթութիւն առած երիտասարդութեան յառաջադիմութիւնը և անոր պարտաւորութիւնները պահանջուին նաև անոնցմէ, որ իրիկունը գերի պառկեցան, և առտուանց Սահմանադրական ելան, վասն զի գիշերը բօսլթան եկած էր, ոչ առաւել և ոչ նուազ:

Ի՞նչ նախապատրաստութեամբ կրնային ընդունել անոնք այսպիսի փոփոխութիւն մը:

Իբրև տէրութեան հրաման. բայց այն ժամանակը զարմանալի գաղափար մը պիտի ունենային Սահմանադրութեան մը վրայ: Իբրև ազգային կառավարութեան հրաման, բայց ազգային կառավարութիւնը Սահմա-

ժողովքները և որոշեալ թիւ մը մասնաւորաց ալ հետ առնելով ընդհանուր ազգին ներկայացուցում մը համարել սահմանադրապէս։

Ներկայացուցում մը, ուր սահմանադրական նպատակի մը առջին, կատարեալ միաբանութեան յատկութիւններ կերեւայ։

Ընդունինք աս ալ մարդասիրութեան համար, կամ գոնէ վայրկեան մը ճիզվիթ ըլլանք ու ըսենք. Վախճանն արդարացուցանէ զմիջոցն։

Բայց ճանչնանք միանգամայն մեր Սահմանադրութեան ձևը, և ըստ այնր պահանջմունքնիս ընենք։ Այո, մենք ալ կը խոստովանինք. այս խորհրդածութիւնները, Սահմանադրութեան ձևին վրայ որչափ իրաւունք ալ ունենան, ալ անոր հաստատութեանը ու վաւերականութեանը վրայ ամենևին տարակոյս մը չեն կրնար ձգել։

Սահմանադրութիւնը հաստատեալ ու վաւերացեալ է, իր ամեն իշխանութիւնները տրամադրեալ. և ինչպէս ըսինք, ամենայն ինչ կատարեալ է։

Ու եթէ յայսմ մասին ազգին յորդորանք մը ունինք ընելու, այս է որ, ամենն ալ կատարեալ վստահութեամբ ընդունին զանիկայ, համաձայնին և յարգեն։

Այս բերնէն, երբէք ուրիշ խօսք չ'կրնար ելլալ. բայց երբոր կարգը գործադրութեան գայ, նախասկիզբը առջևնիս ունենալով, ունինք նաև իրաւունք բացատրութիւններ պահանջելու, զորոնք թէ Սահմանադրութեան և թէ ժողովրդեան օգտին համար գիտնալը կարևոր է,

Մեր ազգին հիմակուան վիճակը անանկ բերաւ որ ընդհանուր ժողովուրդը չ'հրաւիրեց զՍահմանադրութիւնը, այլ Սահմանադրութիւնը հրաւիրեց և կը հրաւիրէ զընդհանուր ժողովուրդը, վասն զի անիկայ պատրաստ չէր կամ գոնէ պատրաստուած չէր տակաւին Սահմանադրութիւն մը ընդունելու։

սահմանադրական քննութեան մը առջին. հարկաւ ոչ։ Կամ թէ այսպիսի դրութեամբ մը հաստատեալ Սահմանադրութիւն մը, կրնա՞յ զուտ Սահմանադրութեան պարտաւորութիւնները պահանջել ժողովրդենէ մը. արդարեւ ոչ։ Ուրեմն մեր պարտաւորութիւններուն սահմանը հասկընալու համար, պէտք է որ գիտենք մինչեւ Սահմանադրութեան նախասկիզբը։

Յիրաւի, առաջին անգամ որ Սահմանադրութեան յօժարութիւն մը տեսնուեցաւ կամ լսուեցաւ, ո՞վ էր յայնմ մասին ազգը ներկայացընող, կամ անոր իրաւունքը ճանչցող և անոնց տէր եղող մասը։

Խումբ մը Կոստանդնուպօլսեցիք. որոնց ամէնն ալ կ'ուզեմ ճանչնալ խիստ պատուաւոր, գիտնական և ազգասէր անձինք. բայց ո՞վ էին ասոնք.

Ազգին հաստատեալ իշխանութիւնը ոչ.
Ազգին ընդհանրութիւնը ոչ.
Ազգին Երեսփոխանութիւնը ոչ.
Ազգին մեծագոյն մասը ոչ.
Ազգին եկեղեցապետութիւնը ոչ.
Ազգին ազնուապետութիւնը ոչ. ոչ. ոչ.

Ատենը ա՞ն ատենն էր յորում պալատի մը սպասաւորը, կամ Եպարքոսի մը դերձակը, Ազգը կը ներկայացընէր. ո՛չ. կամ անտանելի բռնաւորութենէ՞ տառապուած էինք. ոչ. վասն զի 1860 ին, բռնաւորութիւնը շատոնց իր զէնիթն անցած ու նատիրը մերձեցած էր, երբ անոր զէնիթն եղած ժամանակը այսպիսի շահատակները աներեւոյթ և անպատրաստ վիճակի մը մէջ կը լողային։

Ո՞վ էին ուրեմն ասոնք. իրենցմէ առնենք պատասխանը։ Ազգին, կամ (առաւել ուղիղը) Կոստանդնուպօլսեցւոց լուսաւորեալ մասը։ Ընդունինք աս ալ և շնորհակալ ալ ըլլանք։

Բայց մեր զուտ Սահմանադրական խնդիրը ի՞նչպէս կրնանք հանդարտել, չորս միլիոն ժողովրդեան մը այսպիսի ամենափոքր մէկ մասը, նաև ետքէն պատրիարքը

ւերացեալ. ունեցաւ ընտրող, ընտրելի, և ընտրեալ. ունեցաւ Վարչութիւն և ժողովքներ. ուրեմն ամենայն ինչ կատարեալ է։

Այո՛ կատարեալ է ըստ հաստատութեան և ըստ վաւերականութեան. բայց ոչ ըստ գործադրութեան. ուրիշ բան է Սահմանադրութեան մը գրել և հաստատել, և ուրիշ բան է զանիկայ գործադրել. ահա նպատակիս ասոր վրայ մեր կարծիքը յայտնել է։

Թող ամեն մարդ գիտնայ, որ Սահմանադրութիւն բառը միշտ մի և նոյն դրութիւն մը չի նշանակեր. զանազան սկզբանց վրայ հիմնած զանազան Սահմանադրութիւններ կան որոնք իրարու չեն նմանիր։ Աւասիկ եթէ մէկը Սահմանադրութեան վրայ ընդհանուր գաղափար մը ունենալով, ամեն Սահմանադրութենէն ալ մի և նոյն բանը պահանջէ մեծապէս կը սխալի։

Բայց կայ սկզբունք մը, որ ամեն Սահմանադրութեան համար նոյն է. ասով ամեն Սահմանադրութիւն կենթադրէ, որ ժողովուրդ մը իր իրաւունքը ճանչցած է, անոնց տէր է, և ինքը անձամբ կամ երեսփոխանութեամբ իրեն Սահմանադրութիւն մը տուած է, և կամ ուրիշի մը ձեռքէն իր յօժար կամօքը ընդունած է զայն։

Ասոր մէկ բացատրութիւն մը միայն ճանչցանք, որ առաւել մարդասիրութիւն է քան թէ օրինաւորութիւն և ան ալ այն ազգաց համար որոնք ամփոփ և իրարու հետ շարունակ յարաբերութեան մը մէջ չեն։ Ասանկ ազգի մը ընդհանուր լուսաւորութեան սպասելը, յուսահատական համբերութեան մը կարօտ ըլլալուն, կրնայ ազգին յառաջադէմ մէկ մասը ելլալ, և միւս մասն ալ Սահմանադրութեան հրաւիրել։

Այսպիսի բացատրութեան մը մէջ գտնուելնուս համար միայն կըսեմ, դժբաղդաբար այս էր բուն իսկ մեր ազգին վիճակն ալ։

Այսպիսի դրութիւն մը եթէ մարդասիրութեան առջին արդարանայ, կրնայ նոյնը յուսալ նաև զուտ

դրութիւնը բոլորովին փճացուց. անհաւատալի բան, շատերուն այս կապկական պաճուճանաց արգելքը, Սահմանադրութիւնը տգեղ ցուցուց, և կործանմանը պատճառ եղաւ, և շատերն ալ այսպիսի պաճուճանաց թոյլտուութեանց մը, տգեղ Սահմանադրութիւն մը ազգին սիրելի ըլլին. Ուրիշ ազգերն ալ ասոր նման տղայական յօժարութիւններ կրնան ունենալ, որոնց համար ես կ'ըսեմ որ նոր օրէնք մը, պէտքը չէ որ անոնց վրայ շատ մը ծանրանայ և յամառի. ասոնք ետքէն ինքնիրմէն իյնալու բաներ են. Երբ նոր օրէնք մը էական բաներու մէջ ազգի մը տրամադրութիւնը պիտի փոխէ, երկրորդական բաները ալ հոգ մը չեն ունենար.

Անգղիան, ծանրաբարոյ Անգղիան անգամ, մինչև ցարդ այսպիսի ունայնասիրութեան շատ մը օրինակներ կուտայ մեզի. Մէն մարդ գիտէ որ հոն Թագաւորը կամ Թագուհին ամենևին իշխանութիւն մը չունի կառավարութեան գործոցը վրայ. այլ Երեսփոխանութիւնը ինչ որ պատրաստած գտնէ զայն պիտի հաստատէ. Բայց հրովարտակներուն հաստատման ձևը տակաւին կատարելապէս կանգուն է, ուր Թագաւորը կամ Թագուհին բան մը հրամայելու որ ըլլան, թէև իրենց կամքին բոլորովին հակառակ է, այսպէս կը գրեն.

Այս բանս այսպէս հրամայեցինք որովհետև մեր սիրտը հաւնեց այս է, կամ որ առաւել ճիշդ է, այսպէս հրամայեցինք որովհետև քէֆերնիս ասանկ կ'ուզէ (1).

Ասոր վրայ Անգղիա չ'ծիծաղող մարդ մըն ալ չենք կարծեր որ գտնուի. բայց եթէ ծիծաղողներուն մէկ մասը, այս ծիծաղական ձևը փոխելու որ ելլան, շատ համոզեալ եմ որ արիւններ կը թափի. Անգղիա այսպէս հարիւրաւոր սովորութիւններ կայ որ միապետութեան և գուցէ նոյն իսկ բարբարոսութեան ժամանակի մնացորդներն են. Ու եթէ Անգղիայի պէս մեծ և ծանրաբարոյ ազգ մը այսպիսի ոչինչութիւնները տակաւին

(1) Tel est mon bon plaisir.

տանգաւոր ճգնաժամերու սպասելու սիրտ հանդըպի: Այս բաւական այնչափ ճշմարիտ է, որ հարիւրաւոր տարիներէ ինչպէս երեւելի սահմանադրական դրութեան մէջ մնող մեծ եւ պզտիկ գրեթէ ամեն անց-քութիւններ, ունին տեւական գաւառ մը կամ գաւառներ որոնք թէպէտ և անունով սահմանադրական տէրութեան մը ամբողջացուցիչ մասունքն են, բայց անոնց սահմանադրական կառավարութիւն չունին, կամ որ նոյն է տէրութեան մը ամեն գաւառները մի և նոյն Սահմանադրութեամբ չեն կառավարուիր: Զոր օրինակ Անգղիայի նկատմամբ Հնդկաստան և Գանատա, Գաղղիայի նկատմամբ Ալժերին ու Ափրիկան, Աւստրիայի նկատմամբ Դալմատիան, Իլլիրիան եւայլն: Ասոր պատճառը ուրիշ բան չէ, բայց եթէ այս ինչ կամ այն ինչ Սահմանադրութեան, այս ինչ կամ այն ինչ գաւառին բնակիչներուն ներքին հանգամանացը յարմար չ'ունենալուն համար, խելացի դժուարութիւն մը:

Զարմանալին այս է, որ երբեմն նաև մեծամեծ, քաղաքակիրթ, ու երևելի ազգերն ու ժողովուրդներն ալ այնպիսի արմատացեալ յօժարութիւններով իրենց բնակաւոր կը յայտնեն որ, թէպէտ անոնց մեծ մասը ոչինչ բաներ են, բայց անփոփոխ ալ չեն սեպուիր, և որոնց առջին ամեն Սահմանադրութիւն գլուխ ծռած է, եթէ չուզեր կործանիլ:

Գաղղիացւոց հին Սահմանադրութիւններուն արմատ չ'բռնելն ալ գոնէ ըստ մասին ես ասոր կուտամ: Առաջին անգամ որ Գաղղիացիք սահմանադրական եղան, խել մը դուքսեր, կոմսեր, դերակոմսեր, պարոններ և մարքէզներ ունէին, խել մը մարդոց ալ կուրծքը զանազան* նշաններու թանգարան մը եղած էր, խել մըն ալ կարմիր կամ կանանչ լաթ հագնողներ, գլխարկնին եռանկիւնի կամ կլոր ըլլալու վրաբազարդ կամ այս կամ այն ժապաւէնով պաճուճելու իրաւունք ունեցողներ կային, զորոնք նոր Սահմանա-

ազգի մը բնական շարժմանը իրենց կարողութեան չափովը օգնել և խրախուսել։

Ահա ասիկայ է Միահեծանապետութեանց արդիւնքը. որ թէպէտ բնութենէն յառաջ չկրնար ընթանալ, բայց բնութեան կ'օգնէ և բնութեան գործքը կը դիւրացընէ։ Այս է պատճառը որով միշտ և ամեն տեղ, խումբ մը մարդ կ'ելլայ և կը կանգնի այսպիսի սրբազան պաշտօնատարութիւն մը կատարելու. խումբ մը կ'ելլայ յետախաղաց ուժով մը ասիկայ իր նպատակէն արգիլելու։ Երկուքն ալ բնական մղմունք մը մէկը 'ի շարժումն և միւսը յանշարժութիւն. Ինչպէս ջուրը որ կուզէ ծաւալել և երկիրը որ զայն կ'արգելու։

Եւ այսպէս երկու ընդդիմամարտ զօրութիւն իրարու դէմ կ'ելլան, և այս ընկերական պատերազմին մէջ յաղթողը այն է, որն որ դրօշը բռնած առջին, ներքին համագամանութը տեղեկագոյն է։ Մինչև որ մարդկութիւնը իր ընդհանրական ազգութեան սահմանը հասած չէ, մինչև որ ազգ բառը չէթէ բոլոր մարդկային սեռը այլ լեզուով կրօնքով ու ազգութեամբ զատուած ժողովուրդ մը կը նշանակէ, ազգի մը նորոգութեան ժամանակ, իր ներքին համագամանքը մասնաւորութիւնը, և միայն այս մասնաւորութիւնը կրնայ առաջնորդել 'ի յաջողութիւն, որովհետև միայն այս է բնութեան ճամբան։

Ժողովրդեան մը ներքին համագամանքը իր բնութիւնն է. իմաստունները ըսին թէ սովորութիւնն է երկրորդ բնութիւն։ Եթէ բնութիւնը փոխելը առաջին կարգի դժուարութիւններէն է, (եթէ որ անկարելի չէ) երկրորդ բնութիւնն ալ զանէ երկրորդ կարգի դժուարութիւններ կ'ունենայ, որ սա ալ քիչ բան չէ։

Ուստի ամեն օրէնք, կառավարութիւն և Միահեծանապետութիւն, որ ազգի մը ներքին համագամանքը համաձայն է, կրնայ մեծամեծ օգուտներ և բարօրութիւններ առնել և կատարել։ Եթէ ասոր հակառակն է հարկաւ վնասակար հետևութիւններու և մը

կերպութիւնը հիմնականօրէն իր յատուկ կատարելութեանը հասած է, ասկէց կրնանք հետեւցընել որ մինչեւ ցարդ հրատարակուած օրէնքները, դրութիւնները որչափ ազնուութիւններ պարունակեն, տակաւին միա ու փոփոխելէ ալ կատարելագործելէ ազատ չեն ։

Ազգի մը բնակութեան աշխարհագրական դիրքը (այսինքն լեռնային, դաշտային, ծովու մօտ կամ հեռու ըլլալը եւայլն) եւ անոր կլիման. ազգի մը կրօնքը, անցեալը ու ներկայն իր բնական եւ քաղաքական կարողութիւններուն վրայ այնչափ հաստատ ազդեցութիւններ կընեն, զորոնք ջնջելը եթէ կարելի է, գոնէ շատ մը դարերու պարագաները կրնայ ըլլալ ։

Մարդկային սեռը, բնական հաստատ սահմաններ ամրած է այս երկրագնտին վրայ, ապացուցանելու համար, որ անթիւ արիւնահեղ արկածից ալ դիմադրելով, դէպ ’ի իր բնական վախճանն երթալ յառաջադիմութիւնը քայլ առ քայլ կը յառաջանայ ։ Բայց ամենայն ընդհանուր շարժում մը չըլլալուն մէկը յառաջ գացած ատեն միւսն ալ ետ մնացած է. բայց ընդհանուր պայման մըն է, որ եթէ ցարդ յանեան ’ի քուն է, մերձաւորաց յառաջադիմութեան փողերուն առ շուշու պիտի արթննայ ։

Սերմն մարդկային ազգին յառաջադիմութիւնը նոյն իսկ իր բնութեան եւ իր գոյութեան մէջ է, որն որ իր հաստատ կանոններովը այս փոփոխութիւնները իր որոշեալ ժամանակին մէջ պիտի կատարէ. բայց այս վիճակին մէջ, մարդկային սեռը կամ ազգ մը չնմանիր ատեն մը, որ հիմնայատակ կը քանդուի ու նորէն ուզած ձեւով կը շինուի, այլ մանաւանդ կը նմանի այն գոյացութիւններուն, զորոնք բնութեան մէջ կը տեսնանք երկայն ժամանակի մը ազդեցութեամբ յայս կամ յայն մարմին փոխադրուած ։

Բայց եթէ մէկու մը, նաեւ գերագանց հանճարի մը տրուած չէ ազգ մը քանդել ու նորէն շինել, մեծ է պզտիկ ամէնուն պարտական պատասխանատուութիւն մըն է

հակառակորդներուն դէմ առ դէմ կը մնէ, առ. հաստատակաց ձայնով անմիջապէս կը սանձահարի: Աւստրի տպագրական ազատութենէն, և նաև անոր չափազանցութենէն, ինչ անպատշաճութիւններ ալ հետևին (որն որ Թէպէտ օրէնքը կը զսպէ) իրենց հայրենեացը հարազատ բարեկամները այս ազատութեան բնաւ դէմ չեն կենար:

« Աւելի անուրանալի ճշմարտութիւն մըն ալ աս է որ, տպագրութեան ազատութիւն չեղած տեղ մը, ինքնակալը, վտանգի ժամանակ իր ժողովրդեան կարծեացը, հակամիտութեան, և ձեռնարկութեանցը ամենևին ստոյգ տեղեկութիւն մը չ'կրնար ունենալ:

« Ասոր համար ըսաւ Անգղիացի հեղինակ մը: Հասարակաց ձայնը, ինչպէս պահապան շուն մըն ալ կրնայ երբեմն առանց պատճառի հաչելով իր տէրը արթնցնել և անհանգիստ ընել. բայց վտանգի մը ժամանակ ուրիշ ոչ և իցէ պահապան այսպիսի անքուն հսկողութեան մը չ'կրնար ըլլալ:

Ընդունինք այս ամէնը, բայց իրենց արդեան մեծակին համեմատ տպագրական հաստատ օրէնքներ ունեցող ազգերուն համար, ամէն դուքս եզօղը կը պատուորենք անզուսպ ազատութեանց կարգը դատելու բոլոր իր վնասակար հետևութիւններովը:

## ԳԼՈՒԽ Է.

### Սահմանադրութեան օգուտները, իր ձևերը և իր վտանգները.

Ես կը կարծեմ որ մարդկային ընկերութիւնը այն ժամանակը միայն կատարեալ օրէնք և կարգադրութիւն մը պիտի ունենայ, երբ ինքն ալ իրեն սահմանեալ կատարելութեան ծայրը հասնի, կամ Թէ օրէնքները կամ կարգադրութիւնները այնչափ պիտի կատարելութեան մերձենան, որչափ որ զանոնք գործածող ազգը կատարելութեան հասած է:

Եւ որովհետև չենք կրնար ըսել որ մարդկային ըն-

քաղաքական. ասոր հանգամանքներն ալ մեր ընթերցողաց հաղորդելու չենք զանցառներ։

Հինաւուրց փիլիսոփայները կ'ըսեն թէ, Աստուած իր ամենագեղեցիկ ստեղծուածին եթէ ազատութեան և անձնիշխանութեան անգին պարգևը չշնորհէր, այն գեղեցիկ արարածը գերութեամբ կը նուաստանար։ Թէ ասկից ինչ միտքով իմանալու է, ազատութեան նկարագիրը կրնայ միայն մեզի ծանուցանել. ուստի նը կարգաբերենք։

Ազատութիւնը կը սահմանուի, կարողութիւն գործելու անարգել և՛ ինքնայօժար կամօք։ Իւրաքանչիւրոց տուեալ բնական իրաւունք մըն է իր անձը և իր ստացուածքը իր երջանկութեանը պատշաճ տեսած կերպով տրամադրելու, առանց ուրիշի վնասելու։ Կենաց զանազան վիճակներուն իր անձը ուզած կերպով յարմարցնելու և վերջապէս կարողութիւն մը իւրաքանչիւրոց իր բնական միտումը գոհացընելու։

Ազատութիւնը ուրիշ կողմանէ մարդուս բնական մէկ յատկութիւնն է։ Արդէն ամէն մարդ իրեն պահպանութեանը պէտք եղած զգայարանքը ունենալով, և ոչ թէ տեսնելու համար ուրիշին աչք, և լսելու համար ուրիշին ականջ, և ուտելու համար ուրիշին բերան և քալելու համար ուրիշին ոտքը գործածելու կարօտ ըլլալով, ասկէն քանի ամենայն մարդ ազատ և ի-րաւամբ անկախ է, որով ոչ ուրիշ մը իշխանութիւն ունի իր վրայ բռնանալու, և ոչ ինքը ուրիշին։

Մարդուս բոլոր բնական իրաւունքները կրնան 'ի մի միայն ամփոփիլ, այսինքն յազատութիւն։ Ըստ մե-րում, ազատութեամբ է որ մարդս մէկ տեղէն ուրիշ տեղ մը կերթայ անարգել. իր անձը, ժամանակը և վաստակը իր կամքովը կը տրամադրէ. չ'կրնար բռնուիլ և բանտարկուիլ առանց օրինաւոր հրամանի մը, և եթէ հակառակը ըլլայ պատշաճ հատուցման մը իրաւունք կ'ունենայ։ Օրինաց դէմ բան մը չըրած ատեն իր հայրենիքէն չ'կրնար աքսորուիլ, ու պատժոյ մը զա-

պանութիւնը հասարակաց զօրութեան մը կը կարծուի . որով այս զօրութիւնը միայն հասարակաց օգտին համար կը գործածուի , չէ թէ այն անձանց մասնաւորաց օգտին համար որոնց որ այս զօրութիւնը յանձնուած է ։

ԺԳ . Թէ այս զօրութեան և թէ կառավարութեան մէջ եղած ուրիշ ծախքերուն համար , հասարակաց տուրք մը անհրաժեշտ է . այս տուրքը ամեն ազգայնոց իրենց կարողութեան չափովը հաւասարապէս պիտի բաժնուի ։

ԺԴ . Ամեն ազգային թէ անձամբ և թէ Երեսփոխանութեամբ կրնայ ստուգել հասարակաց տուրքի մը կարևորութիւնը , իր ազատ կամքովը անոր հաւանիլ , մատակարարութեանը տեղեկանալ , չափը , բաժանումը , ժողովածքը և տևողութիւնը որոշել ։

ԺԵ . Ժողովուրդը իրաւունք ունի ամեն հասարակաց պաշտօնատարէն իր մատակարարութեան հաշիւը պահանջելու ։

ԺԶ . Այն ժողովուրդը որուն իրաւանց երաշխաւորութիւնը ապահովուած չէ , և որոշեալ իշխանութիւնները բաժանուած չէ . այն ժողովուրդը բնաւ Սահմանադրութիւն չունի ։

ԺԷ . Ստացուածքը սրբազան և անձեռնմխելի իրաւունք մը ըլլալով , մէկու մը ձեռքէն չ'կրնար առնուիլ , մինչև որ օրինաւորապէս հաստատեալ և յայտնապէս պահանջեալ ընդհանրութեան օգուտ մը համար չըլլայ , բայց այս դիպուածին մէջ ալ արդար և կանխիկ հատուցում մը կը պահանջուի ։

Ահա ասոնք են խիստ պատուականներէն մարդուս համար ընդունուած բնական իրաւունքը ։ Ուրիշ դրութեանց մէջ առաւել կամ նուազ չափաւորեալ են . բայց ինչ կերպով որ ըլլայ , եթէ մէկը այս վերայեալ իրաւունքը գործնական կարծելով ձեռքը առնէ և սկսի անով վարուիլ , ընկերութեան մէջ անմիջապէս մեծամեծ ընդդիմութեանց կը հանդիպի 'ի վնաս անձին և 'ի վնաս հասարակութեան ։

նանկ վէճք մը որ ամեն ձեռք պիտի տրուի, մանուկ, երիտասարդ, ծեր, այր, կին վերջապէս ան որ մարդ կոչ կամ քանական է այս իրաւունքը պիտի գործածէ, և կենթացքուն որ աղէկի պիտոր գործածէ։

Ասիկայ վտանգաւոր խնդիր մըն է։

Փոխառ ռամկապետականք, կայսերք հասարակապետականք, Սահմանադրականք և ուրիշ ամեն ընկերութիւն ժողովրդեան վրայ քիչ շատ բնական կամ անձնական իրաւունք մը կը ճանչնան, և անոր պայմանները կը բացատրեն։ Ես առանց ամենէն յառաջ երթալ կ՚ուզէի, և կը փափաքէի որ անձնական իրաւանց ամենուն չափ և պայման մը չդրուէր, և ամեն մարդ ինչ ուզէր և ինչ կարենար անիկայ գործածէր։

Բայց տեսանք թէ ընկերական վիճակի մը մէջ անիկայ կարելի է մի։ Եթէ մէկը ինծի համաձայնէ, թէ առանց կրօնի և առանց ընկերականութեան մարդ մը կրնայ ըլլալ, անմիջապէս անոր համար այսպիսի բացարձակ իշխանութիւն մը պիտի առաջարկէի. բայց եթէ չըլլար, հարկաւ պիտի հետեւի որ մարդս այս երկու վիճակին մէջ, իր բնական իրաւունքներէն խել մը բան պիտի զոհէ և այնչափ ազատութիւն պիտի ունենայ որչափ որ այս երկու վիճակը իրեն կը ներէն։

Ասոր համար մեծապէս կը սխալին անոնք, որոնք մարդուն բնական իրաւանցը քիչ կամ շատ սեղեալ ըլլալով կը կարծեն որ զանոնք ամեն տեղ, ամեն ժամանակ, և ամեն վիճակի մէջ կրնան համարձակ գործածել. սխալ մը, որ շատ վտանգաւոր հետեւութիւններ կրնայ ունենալ։

Ասոր նկատմամբ օրինակ մը կրնանք առնել։ Եր-գար արքեամբը կամ ժառանգութեամբ ստացուած մը ունեցողէն աւել ինչ արդարական կամ բնական իրաւունք մը կրնայ ունենալ մէկը. ով կրնայ զանազանել ծի ստացական մը ստանալու իրաւունքը։ Ոչ ոք։ Բայց ես հիմայ կապացուցանեմ որ ընկերական վիճակի մը մէջ այսպիսի բացարձակ իրաւունք մը ոչ երբեք պիտի

մասօտ գրութեան մը մէջ բացատրել։ Այնանք այս միայն զգուշցել որ այս միջին ճամբան խոհեմութեան, զգուշութեան, և բարեխառնութեան ճամբայ մըն է որուն օրինակ կ'ըլլան մեզի այն վարպետ նաւաստեանը, որոնք հակառակ հովմոց և մրրկաց հանդիպելով նաւերնին այնպէս մը կը կառավարեն, անանկ պատշաներ կըննեն, որ թէպէտ յաջող հովմոց հետ բաղդատելով յամրաքայլ ընթացք մըն է, բայց միշտ դէպ 'ի նպատակը կը տանի. սոր ներհակ հակառակ հովմոց դէմ առ դէմ հակառակող նաւաստեայք, անշուշտ պիտի տեսնայ իր նաւին կայմերուն խորտակիլը և երբեմն նոյն իսկ նաւին ժայռերու վրայ փշրտիլը։ Խոհեմ և խելացի կառավարողներու, սոր ներհակ, հակառակութենէն շատ և մեծամեծ օգուտներ ալ կրնան քաղել իրենց նպատակին. և այսու նկատմամբ հակառակութիւնը սահմանադրական զարմանալի գեղեցկութիւններուն մէկը և գաղտ գլխաւորն է, միապետութեան դէմ, ուր որ հակառակութիւնը կը ջախջախէ և գլխակաց վրայ կը քալէ, երբ Սահմանադրութիւնը զանիկայ կը գգուէ որով և բարգաւաճս կը նուաճէ։

## ԳԼՈՒԽ Ե.

### Բնական կամ անհատական իրաւունք։

Այս գլուխը ընդհանրապէս կանոնէ կը բերէ մեզ Սահմանադրական դրութեան ամենէն մեծ և ամենէն երեւելի գծուարութեանը, որ է բնական կամ անհատական իրաւանց բացատրութիւնը։

Երկու պատճառաւ սոսկ մեծ և երեւելի դժուարութիւն ըսելու իրաւունք ունինք, մէյմը որ ասիկայ Սահմանադրական միւս ամեն իրաւանց աղբիւրը կամ հիմն է, երկրորդ եթէ միւս երկու իրաւանց միայն որոշեալ մարդիկ տէր պիտի ըլլան, սոր բոլոր ժողովուրդը սաւանց բացառութեան տէր պիտի ըլլայ. ա-

ղեկավար մը որ Բոնափարթ կը կոչուի. հզօրագոյն ընկեր ըլլալ, և ծախահնարուեցաւ:

Բայց եթէ ժողովուրդ մը տգիտական չէ, անշուշտ հնազանդ պիտի ըլլայ հաստատուած օրինաց, թէև այն օրէնքները վնասակար ալ երևին: Ժողովուրդ մը կրնայ այնպիսի օրինաց մը վնասակարութիւնը յայտնել և փոխել տալ, բայց քանի որ օրէնքը օրէնք է, ոչ ոք անոր չհնազանդելու իրաւունք մը կրնայ ունենալ, ինչ և իցէ պատճառաւ:

Եթէ սահմանադրական ժողովուրդ մը այս կէտերուն կատարեալ ուշադրութիւն չընէ, իր իշխանութիւնը չարաչար գործածած ըլլալով, հետևութիւնը Սահմանադրութեան կործանումը կ'ըլլայ: Այս է պատմութեան վկայութիւնը:

Երկրորդ. ամեն Սահմանադրութիւն իր ծոցը գոնէ երեք բաժանմունք կունենայ: Ռամիկ սահմանադրականք. Ընտրեալներ. և Սահմանադրութեան իշխանութեանը հակառակողներ: Այս վիճակին մէջ ամենէն վտանգաւորները կամ վնասակարները անտարբերներն են, որովհետև իրենց անտարբերութեամբը մէկ կամ միւս կողմը հակելով, առանց բանաւոր պատճառի մը մէկ կամ միւս կողմը կը զօրացընեն, և մէկը միւսոյն իշխել կու տան, ասով ազգ մը որչափ անտարբեր պարունակէ իր ծոցը այնչափ իր Սահմանադրութիւնը խախուտ կ'ըլլայ:

Սահմանադրական իշխանութեան ամենամեծ հոգը և զգուշութիւնը պիտի ըլլայ, հակառակ կողմը չափաւորութեան մէջ պահել. եթէ ինքը անոր առջին տկար երևայ, ան կը զօրանայ և իր վրայ կը տիրէ. եթէ բռնանայ, հակառակութիւնը կունենայ յուսահատական ոյժը որ ամեն զօրութիւններէն զօրաւորագոյն է, այս երկու պակասութիւնն ալ կրնան սահմանադրական իշխանութիւն մը կործանել:

Ասանկ վիճակի մը մէջ, իշխանութիւնը միջին ճամբայ մը բռնելու է, որն որ անկարելի է ասանկ հա-

Մեծապէս ժողովուրդը, իր իշխանութեան իր ընտրած Երեսփոխաններուն վարմունքին վրայ միշտ հսկելու պարտաւորութիւնն ալ ունի, բայց յայսմ մասին ալ, Լամարթինը սա արժանաւոր խորհրդածութիւնը կ'ընէ :

« Եթէ թագաւոր մը, իշխան մը կամ ժողովք մը
« կը սխալի կամ իր իշխանութիւնը չարաչար կը գոր-
« ծածէ, երբ ժողովուրդը արթուն է, ասոր վնասը
« բնաւ մեծի մասին սխալողին է, վասն զի թագաւոր
« կ'երթայ, թագաւոր կու գայ, ժողովք կ'երթայ և
« ժողովք կու գայ. բայց եթէ ազգ մը կը սխալի կամ
« իր իշխանութիւնը չարաչար կը գործածէ, որովհե-
« տև ազգ երթայ նէ ազգ չ'գար, ասանկ սխալման մը
« հետևութիւնը, ազգի մը ազգաց կարգէն ջնջուելէն
« ուրիշ բան չ'կրնար ըլլալ : »

Սարսափելի վճիռ, որ կը ցուցընէ թէ ինչ խոհեմութիւն ինչ շրջահայեցութիւն և ինչ զգուշութիւն պէտք է ազգի մը, երբ իր գերագոյն իշխանութիւնը որոշիչ կերպով մը գործադրելու կ'ելլայ :

Այս գլուխը չ'ենք կրնար լմնցունել, առանց քանի մը նշանաւոր կէտերու բացատրութիւնն ալ մեր ընթերցողացը հաղորդելու :

Նախ՝ միապետական իշխանութիւնը իշխող մը կը պահանջէ և հպատակ մը : Սահմանադրական իշխանութիւնը այս պահանջմունքները չ'կրնար ունենալ. հոն ոչ իշխող կայ և ոչ հպատակ. հոն իշխողը և հպատակողը մի և նոյն անձն է, այսինքն ազգը կ'իշխէ և ազգը կը հնազանդի, ուստի սահմանադրական իշխաններուն վարմունքը շատ տարբեր պիտի ըլլայ միապետական իշխաններուն վարմունքէն, որոնք գերութեան հպատակութիւն կը պահանջեն ժողովրդէն :

Լուի Փիլիպին ժամանակը պաշտօնեայ մը ըսաւ ժողովքին. Թագաւորը իր աթոռին ծախքերը պէտք չափաւորէ, պէտք է որ հպատակներն ալ անոր հետևին :

Անմիջապէս ժողովոյ անդամ մը պատասխանեց. ծա-

տրուած է, անիկայ ամբողջապէս պահելով, այսինքն ոչ միայն բաժնին իրաւունքը յափշտակելով, և ոչ ալ իրեն տրուածը ուրիշէ մը յափշտակել տալով։ Ուստի նախագահ մը որ կամ իր իշխանութիւնը ժողովքներուն կուտայ և ինքը անուամբ իշխանութեան բաւականալով իր իրաւունքէն անհոգ կ'ըլլայ, և կամ ժողովքներուն իշխանութեանը վրայ կը բռնանայ և ամենն ալ իր անձին կ'ամփոփէ։ Նա կամ ժողովք մը որ կամ իր իշխանութիւնը նախագահին կուտայ և իր իրաւունքներուն անհոգ կ'ըլլայ, և կամ նախագահին իրաւանցը վրայ կը բռնանայ և տիրապետել կուզէ, երկուքն ալ միապէս Սահմանադրութեան դէմ կը մեղանչեն և Սահմանադրութիւնը վտանգի մէջ կը ձգեն, կամ գոնէ մեծամեծ խռովութեանց և յուզմանց պատճառ կ'ըլլան։

Գաղղիացւոց Լուի Փիլիպ Թագաւորին ժամանակը, այս խնդրոյն վրայ մեծամեծ վէճեր ծագեցան, որոնց մէջ սա խօսքերը շատ նշանաւոր եղան։

Եթէ Թագաւորը, ժողովքները ինչ ըսեն նէ այն ըլլալ վճռէ նէ, Թագաւորը ուրիշ բան չէ, բայց եթէ արձանագրութեան գործիք մը. կամ կնիք մը որ ամէն թուղթի վրայ կը կոխուի։ Եթէ ժողովքները Թագաւորը ինչ ուզէ նէ այն ըլլալ հաստատեն նէ, ժողովքները ուրիշ բան չեն բայց եթէ ձայնարկու մը։

Այս խօսքերուն ամէն տառը ոսկեգիր մեծ խրատներ են։ Ուստի կամ պէտք չէ իշխանութիւնները բաժնել, և կամ երբ կը բաժանուին անոնց իրաւունքը և իշխանութիւնը անխախտ պահել։

Այսինքն Սահմանադրական իշխանութեան ամենամեծ դժուարութիւնն է. վասն զի բաժանեալ իշխանութեանց միաբանութեան բարեկարգութիւնը ունենալը, քիչ ազգերուն վիճակն եղած է։ Անոր համար, նաև Եւրոպայի մէջ միշտ կը տեսնանք որ կամ Թագաւորը ժողովքներուն կը հակառակի և կամ ժողովքները Թագաւորին, և ասանկով մէկուն կամ միւսին չարաչար հետևութիւններ կ'ելլայ, և երբեմն նաև Սահմանադրութեան կործանում։

ըսպերեալ միշտ նոր կարգադրութեանց կամ հիներուն մեկնութեանը կարօտ կ'ըլլայ ։ Այս հոգը կրնայ բացարձակապէս ազգին օրէնսդիր իշխանութեանը, որն որ քննելու, վճռելու, և խորհելու կարօտ գործողութիւն մը ըլլալով կրնայ քանի մը կամ շատ մը մարդոց և կամ ժողովքի մը կամ քանի մը ժողովքի յանձնուիլ ։

Աւստի թէպէտ ազգային իշխանութեան յանձնառութիւնը այսչափ դժուարին և այսչափ զանազան է, բայց երբ ազգ մը իր Սահմանադրութեամբը այս ձևերուն մէկը կ'ընդունի ալ, անհատները կարող չեն անիկայ փոփոխելու, մանաւանդ ամեն անհատ որ կարգէն որ ըլլայ, կատարեալ հնազանդութիւն պարտաւոր է հաստատեալ իշխանութեան, որուն փոփոխութիւնը միայն ազգին ընդհանրութիւնը կրնայ պահանջել ։

Այս գործադիր իշխանութեան մէջ է, Սահմանադրութեանց ամենամեծ վտանգը, նա մանաւանդ երբեմն նաև անոնց մահը, որն որ քիչ մը բացատրութեան կարօտ է ։

Բանենք անանկ դրութիւն մը, ուր ազգի մը գերագոյն իշխանութիւնը մէկ նախագահի և երկու ժողովքի յանձնուած է, որն որ քանի մը ազգք վերնագոյն և ստորնագոյն ժողովք կ'անուանեն ։

Իշխանութիւնը, միշտ միութիւն կը պահանջէ, և անմիաբան եղող իշխանութիւնը քաղաքագէտք անիշխանութիւն կ'անուանեն ։ Բաժանեալ իշխանութեան մը մէջ այս միութիւնը գտնալու համար, բաժանեալ մասունք պէտք է որ ճշգիւ իրենց իրաւանցը տէր ըլլան, ոչ աւելի և ոչ նուազ ։ Ասոր երկու ծայրն ալ Սահմանադրութեան վտանգաւոր է ։

Ազգ մը երբ իրեն իշխանութիւնը այսպէս կը բաժնէ, անանկ որոշադրելու է որ, իւրաքանչիւր բաժին մէկ տեղ գալով դարձեալ միութիւն մը կազմէ. և այս կ'ըլլայ իւրաքանչիւր բաժնին ինչ իրաւունք որ

ներ որ. այս երդումը յանձն չառին և Թագէն հրաժարեցան ․ եղան ուրիշներն ալ, որ երդումնին աւրեցին, բայց կամ ինկան և կամ տիրապետեցին և Սահմանադրութիւնը ջնջեցին, ասոնք պատմութեան կը վերաբերին ։

Բայց որչափ դիւրին է ըսելը որ ազգի մը իշխանութիւնը ազգին իրաւունքն է, այնչափ դժուարին է ցուցընելը որ ազգ մը այս իշխանութիւնը ինչպէս պիտի վարէ ։ Նոր յայանի ապացոյց մը աս է որ, ամեն սահմանադրական և ռամկապետական դրութիւն, Թէպէտ միապէս կ՚ընդունի, որ գերագոյն իշխանութեան իրաւունքը ազգին նէ, բայց այս իշխանութիւնը գործադրելու կերպին գալուն պէս խիստ կը զանազանին Թէ յազգէ յազգ և Թէ մէկ ազգի մը մէջ ժամանակէ ժամանակ ։ Ինչանկ որ այսօրուան զոս Եւրոպայի մէջ, Թէպէտ շատ մը սահմանադրական տէրութիւններ կան, բայց իրարու նման Սահմանադրութիւն ունեցող երկու տէրութիւն չ՚կայ ։ Միևնոյն տէրութեան ժամանակի փոփոխութեան գալով, կըսենք որ նոյն իսկ Պաղղիոյ տէրութիւնը վաթսուն տարուան մէջ գոնէ տասը անգամ իր սահմանադրական իշխանութեան ձևը փոխեց ։ Այս փոփոխութիւնները իրարմէ շատ տարբեր և շատ զգալի են ։ Սահմանադրութիւն կայ որ ազգի մը իշխանութիւնը միայն քանի մը երևելեաց իրաւունք կը ճանչնայ, կայ որ կէսին, կայ որ մեծագոյն մասին, կայ որ ամենուն ։ Դարձեալ ազգ կայ որ իշխանութիւնը միայն մէկ մարդու կը յանձնէ, կայ որ շատ մը երեւելեաց, կայ որ ազգին մեծագոյն կամ փոքրագոյն մասին և կայ որ ազգին բովանդակութեան ։

Հասարակօրէն ազգի մը իշխանութիւնը յերկուս կը բաժանի, Օրէնսդիր և Գործադիր. այսինքն օրէնք շինող կամ ան օրինաց գործադրութիւնը հրամայող ։ Ազգի մը Սահմանադրութեան մէջ Թէպէտ շատ մը կարգադրութիւններ կը գտնուին, բայց փորձը կը ցուցընէ որ գործադրութեան մէջ ընդհանուրին վե-

կու մըն ալ ըսելիք չ'ունիմ. այլ թէ ոչ եկեղեցական և աշխարհական իրաւանց վրայ հիմնած մեծամեծ գժտութիւններ ծագիլ, որոնք 'ի հարկէ չորաչոր հետեւութիւններ կ'ունենան.

## ԳԼՈՒԽ Դ.

### Ռամկական կամ ազգային իշխանութիւն.

Հոս մեր նպատակը քաղաքական իշխանութեան ծագումը և զանազան ձևերով տիրապետելը նկարագրել չէ, այլ սահմանադրական դրութիւնը այս իշխանութիւնը ինչպէս կը հասկընայ և ինչպէս կը վարէ, անիկայ բացատրել է.

Մեր սահմանադրական դրութիւն միապէս կ'ընդունի, որ այս վիճակին մէջ, իշխանութիւնը ազգին իրաւունքն է, և ոչ թագաւորի մը կամ ցեղի մը, և կամ ուրիշ անհատի մը. ուստի ազգին իշխանը նոյն իսկ ազգն է.

Պէտք է խոստովանինք որ այս սկզբունքը աստուածաբանական դրութեան դէմ է, որովհետև այս դրութեան մէջ այնպէս կ'ենթադրուի որ թագաւորը կամ իշխանը իր տիրապետելու իրաւունքը չէ թէ ժողովուրդէն, այլ Աստուծմէ ունի. Բայց կ'արծեմ անիկայ մանաւանդ աստուածաբանական խնդիր մըն է քան թէ հաւատոյ մասն, և թէ որ ասանկ ալ ըլլայ, Սահմանադրութիւնը դարձեալ կ'արդարանայ, ան երդումովը որ տալ կ'ուտայ իր թագաւորներուն և անոր պաշտօնէից.

Սահմանադրական դրութեան մէջ, թագաւորը հրապարակաւ երդում կ'ընէ Սահմանադրութեան հաւատարիմ մնալու, որ է ժողովրդեան իշխանական իրաւունքը հրապարակաւ ճանչնալ և ընդունիլ. Այլ եթէ երդումը աւրէ, ժողովուրդը իրաւունք ունի զանիկայ աթոռէն ձգելու. Բայց եղան շատ թագաւոր-

Երրորդը․ սահմանադրական պայմանին Թեամբ․ այս ձևին մէջ, եկեղեցական գերագոյն իշխանութիւնը, աշխարհական իշխանութեան հետ կը դաշնակցի, և երկու կողմն ալ իրենց իրաւունքը իրարու կ՚ապահովցունեն։

Արդ երբ Սահմանադրութեան մը մէջ կըսուի թէ որ տէրութեան կամ ազգին կրօնքը այս կամ այն կրօնքն է, հարկաւ պէտք հասկցուի որ այն կրօնքին գերագոյն իշխանութեանը հետ դաշնակցութիւն մը եղած է և փոխադարձ ապահովութիւններ որոշուած ու սահմանուած են․ և այսպիսի դաշնակցութեանց դէմ գործողը երկու իշխանութեան առջին ալ դատապարտելի կ՚ըլլայ։

Եթէ այսպիսի դաշնակցութիւնք երկու կողմանէ ալ կատարելապէս պահպանուին, կրնանք համարձակ ըսել, որ կրօնքը սահմանադրական կառավարութեան առջին ամենէն ապահովագոյն վիճակի մէջ է․ վասն զի այս վիճակին մէջ կրօնքի դէմ եղող յանցանքները նաև աշխարհական իշխանութեամբ կը զսպուին ու միւս երկու վիճակին մէջ, աշխարհական իշխանութիւնը անկէ բոլորովին անհոգ կրնայ ըլլալ։ Ազգի մը եկեղեցական իշխանութիւնը, այն ազգին սահմանադրական վիճակի մը մտնելէն յառաջ, հարկաւ կամ եկեղեցապետութեան և կամ եկեղեցական անկախութեան վիճակի մէջ գտնուած ըլլալու է․ ուր հարկաւ նաև իր ապահովութիւնը կամ հաւասարակշռութիւնը գտած պիտի ըլլայ․ բայց երբ ազգ մը իր աշխարհային կառավարութիւնը կը փոխէ եկեղեցական իշխանութիւնը ամենայն իրաւունքը ունի նոր և անծանօթ իշխանութենէ մը դարձեալ իր ապահովութիւնները պահանջելու․ յայսմ մասին Սահմանադրութեան մէջ, միայն այս ինչ կրօնքը ազգին տիրող կրօնքն է ըսելը եթէ հաւատացելոց խիղճը չ՚հանդարտեր, աշխարհային կառավարութեան պարտքն է կրօնքին իր տուած ապահովութիւնները նաև եկեղեցական գերագոյն իշխանութեան վաւերացընել և հրատարակել տալ, որով մի-

չափերու ենթակայ չըլլայ, չափուց և կշռոց սկզբնատիպը, բոլորովին անայլայլելի մետաղներէ շինուելով ամենապահով տեղեր ամենայն դիւրութեամբ կը պահպանուի, մինչև անգամ օդի հետ հաղորդակցութիւնը կտրելով:

Եթէ իւրաքանչիւր անհատ իրաւունք ունենար հասարակութեան գործածած չափուց և կշռոց վրայ նաև ամենափոքր և աննշմարելի մասնիկ մը աւելցունելու կամ պակսեցունելու, հազար միլիոնաւոր անհատներու ձեռքերէ անցած չափերը կամ կշիռները, իրենց սկզբնատիպին հետ ալ ի՞նչ վերաբերութիւն կրնային ունենալ, ընթերցողք թող մտաբերեն:

Նոյնպէս է ըստ ամենայնի իւրաքանչիւր ընկերութեան ընդունած հաւատքը կամ կրօնքը որ հարկաւ հազար միլիոնաւոր ձեռքերէ պիտի անցնի, բայց ոչ ոք իշխանութիւն պիտի ունենայ անկէց և ոչ ամենափոքր և աննշմարելի մաս մը բառնալու կամ աւելցունելու, առանց կրօնական իրաւանց դէմ մեծապէս մեղանչելու:

Այս սկզբունքը գոնէ ամեն Քրիստոնեայ ազգէ և ժողովուրդէ ընդունուած է, բայց իբրև սկզբունք, տեսական է, իբրև գործնական, երեք կերպով կը ներկայանայ ազգի մը: Մէյմը եկեղեցապետութեամբ: Եկեղեցապետութիւնը, ուրիշ բան չէ, բայց եթէ ազգի մը գերագոյն ամենէն իշխանութիւնը եկեղեցական իշխանութիւն ճանչնալ, որ ըսել է թէ քաղաքական իշխանութիւնը բոլորովին անոր հպատակ է: Այս ձև կառավարութիւն մը Եւրոպիոյ մէջ մէկ երկու հատ հազիւ մնացած է:

Երկրորդը եկեղեցական իշխանութեան անկախութեամբ: Անգլիայ հասարակօրէն միապետական իշխանութեանց բաժինն է, ուր եկեղեցին միշտ իր անկախութիւնը կը պահէ, և եթէ իրեն բռնութիւն մը ըլլայ, աշխարհական իշխանութեան ամենևին չ'հնազանդիր նա մանաւանդ զանիկայ կը սաստէ և կը բանադրէ: Սանկ կառավարութիւն ալ հիմայ քիչ մնացած է:

Անոնք ամենեւին ազատ կրօնք մը չեն ճանչնար, այլ բազմութիւնը որ կրօնքն որ յարի, անոր իրաւունքը եւ իշխանութիւնը կը ճանչնան. ուստի կրօնքի մը թոյլ տալու համար, անոր հաւատացողաց որոշեալ թիւ մը կը ծանուցանեն, որ մինչեւ որ ան որոշեալ թիւը չ՚լեցուի այն կրօնքին իրաւունքը կամ իշխանութիւնը չի ճանչցուիր:

Սահմանադրութիւն մը այս դրութիւններուն որ մէկուն հետեւած է նէ, պէտք է որ իր հիմնական օրէնքներուն մէջ անիկայ ծանուցանէ, բայց միայն անիկայ բաւական չէ:

Պէտք է, եւ մանաւանդ անհրաժեշտ պայմանք մըն է, որ Սահմանադրութիւնը իր ընդունած կամ թոյլ տուած եկեղեցական իշխանութեան հետ իր յարաբերութիւնն ալ ամենայն կերպով կարգադրէ. ապա թէ ոչ, Սահմանադրութիւնը անկատար կ՚ըլլայ եւ պակասաւոր. որն որ չարաչար հետեւութիւններ կրնայ ունենալ:

Այս ալ իր պատճառը ունի. թէպէտեւ ամեն մարդ ազատ է իր կրօնքը փոխելու. բայց կրօնքը ինքնին եւ իր բնութենէն անփոփոխ է: Ամենքը կրօնք կը դաւանին որ կրօնքը Աստուածային յայտնութիւն մըն է որ է ըսել յաւիտենական ճշմարտութիւն, որով մարդկային փոփոխութեանց բնաւ եւ ոչ մէկուն ենթակայ: Կրօնքը իր վարդապետութեամբը կը ներկայանայ ազգի մը. բայց որպէս զի իր այն յաւիտենական ճշմարտութեան կնիքը պահէ, պէտք է որ ոչ ոք կարենայ անոր դպչիլ:

Քաղաքականը տար նիւթական օրինակ մը կուտայ մեզի, որ է չափուց եւ կշռոց ամենայն հսկողութեամբ պահպանութիւնը: Չափք եւ կշիռք ընկերութեան մը մէջ ներկայ եւ ապագայ ամենուն համար, պէտք է որ մշտնջենաւոր ճշմարտութիւն մը ըլլան. եւ որպէս զի ասոնց սկզբնատիպը ամենեւին չ՚այլայլի եւ ժողովուրդ մը մէկ կողմանէ մի եւ նոյն չափ եւ կշիռ ունենալ ենթադրուելով, միւս կողմանէ ալ սուտ եւ խարդախեալ

ցուած և ընդունուած է, և բնական իրաւունք մը ըլլալուն Եւրոպա ասիկայ բանութեամբ կամ համոզմամբ ամէն ուրիշ ազգերու ալ ընդունելի տալու կը ջանայ։ Նոր բնական իրաւունք մը ըլլալուն սա ալ մէկ ապացոյց մըն է որ ամէն ազգ իր հաւատքին եղած բանութիւնը հալածում կ'անուանէ, և ան բանութեան զոհ եղողն մարտիրոս։

Եթէ ամէն վիճակի մէջ աս ասանկ է, ևս առաւել սահմանադրական կառավարութեան տակ գտնըւող ժողովուրդ մը, աս ազատութիւնը պիտի կատարելապէս վայելէ։ Բայց այս խղճմտանքի ազատութիւնը թէպէտ ամէն մարդու բնական իրաւունքն է, սակայն ամէն անհատի իր ազատութեամբը ընդունած կրօնքը, նաև սահմանադրական կառավարութեան տակ եղող ժողովրդեան մը մէջ եկեղեցական իշխանութիւն մը չ'կազմեր, ապա թէ ոչ անթիւ մարդիկ և անթիւ կըրօնք ըլլալուն, ազգի մը մէջ ալ անթիւ եկեղեցական իշխանութիւններ գտնուիլ հարկ կ'ըլլար որ անկարելի է։

Յայսմ մասին սահմանադրական տրամադրութիւնները ըստ ամենայնի իրարու չեն յարմարիր։ Ոմանք մի միայն ազգային կամ տիրող կրօնք մը կընդունին և միայն անոր իշխանութիւնը կը ճանչնան։ Ոմանք ուրիշ քանի մը, կամ ամէն կրօնքներու ալ թոյլտուութիւն կընեն. բայց հոս, այս թոյլտուութիւնը, կրօնափոխութեան ազատութիւնը պէտք չէ հասկցուիլ, վասն զի ասիկայ արդէն բնականապէս թոյլ տուեալ է։ Սահմանադրական լեզուի մէջ, թոյլտուութիւն ըսելով աս կը հասկըցուի, որ թէպէտ ազգ մը իր տիրող կրօնքը ունի և անոր իշխանութիւնը կը ճանչնայ, բայց ասոր հետ մէկ տեղ, ըստ ամենայնի անոր հաւասար կամ քիչ կամ շատ տարբերութեամբ թոյլ տուեալ կրօնքի մը կամ կրօնքներուն իրաւունքն կամ իշխանութիւնն ալ կը ճանչնայ, և ինչ պաշտպանութիւն որ կընէ տիրող կրօնքին՝ նոյն պաշտպանութիւնն ալ պիտի ընէ նաև թոյլ տուեալ կրօնքին։

բաւականանայ, և՛ ուր իր ձայնը ընդդիմութենէն վեր
է, շուտին կը ձեռնարկէ, և այս է միանգամայն ուրիշ
պատճառ մը զանազանութեան Սահմանադրութեանց։

Բայց որովհետև սահմանադրական կառավարու-
թիւնը այսօրուան օրս շատ մը ազգաց համար ալ իրա-
կական կառավարութիւն մըն է, ալ անոնց դուզնա-
քեայ զանազանութեանցը չնայելով, ժողովրդեան հա-
մար անոնց ճանչցուած և ընդունուած իրաւունքները
կրնանք ընդհանրապէս ծանուցանել և բացայայտել,
երեք գլխի բաժնելով.

Ա. Կրօնական կամ եկեղեցական իրաւունք.
Բ. Քաղաքական կամ ազգային իրաւունք.
Գ. Բնական կամ անհատական իրաւունք։

## ԳԼՈՒԽ Գ.

### Կրօնական կամ եկեղեցական իրաւունք։

Սահմանադրութիւնը, որ ազգի մը մէջ ամէն իշ-
խանութեանց կարգադրութիւնն է իր ընթացքին մէջ
հարկաւ և յաճախակի եկեղեցական իշխանութեան
դիմացը կը գտնուի և անոր հետ յարաբերութիւններ
կ'ունենայ։ Եկեղեցական իշխանութիւնը որ ամէն ազ-
գի մէջ բոլորովին անկախ, անփոփոխելի և անքննա-
բարելի իշխանութիւն մը կը համարուի, և որն որ
խիստ բռնաւորական իշխանութեանց տակն ալ իր ան-
կախութիւնը պահած է, առջի բերան անանկ կերևայ
որ, ազգին կամքէն կախուած և միշտ փոփոխելի աշ-
խարհային իշխանութեան մը հետ բնաւ համաձայնու-
թիւն մը չ'կրնար ունենալ. բայց փորձը ատոր ներհա-
կը կը հաստատէ։

Արդարև, ուզած կրօնքին մէջ մնալու կամ թէ ու-
զած կրօնքը երթալու ազատութիւնը կամ իրաւունքը
սահմանադրական ազատութիւն մը չէ այլ բնական ի-
րաւունք. ասիկայ բոլոր Եւրոպական ազգերէ ճանչ-

րաւունքը, և անկէց կը հետևի որ իրաւունք և պարտաւորութիւնք իրարմէ անբաժանելի են ։ Թէպէտ այս կերպով ժողովրդեան մը իրաւունքը յստակ կ'որոշուի բայց տակաւին ամեն ժողովրդեան համար միօրինակ ըլլար ։ Ասիկայ նախ և յառաջ կառավարութեան ձևէն կախում ունի, և Թէպէտ սահմանադրական կառավարութիւնները բաւական ընդարձակ իրաւունքներ կու տան ժողովրդեան, բայց ամեն սահմանադրական կառավարութիւն միօրինակ չըլլալուն, այս իրաւունքներն ալ միօրինակ չեն կրնար ըլլալ. և աս ալ իր պատճառը ունի ։ Երբ ըսինք որ իրաւունք և պարտաւորութիւնք անբաժանելի են. անկէց կը հետևի որ ժողովուրդ մը որչափ շատ իրաւունքներ ունենայ, այնչափ շատ պարտաւորութիւններ ալ պիտի ունենայ. և որովհետև ամեն ժողովուրդ իր հիմակուան վիճակին մէջ, շատ մը պարտաւորութիւններ յանձն առնելու բնական և բարոյական տրամադրութիւն չի կրնար ունենալ. ասով հարկ կ'ըլլայ այս կամ այն ժողովրդեան հիմակուան կարողութեանը չափովը պարտաւորութիւնները չափաւորել, որով և իրաւունքն ալ ։ Ասիկայ է պատճառ զանազանութեան Սահմանադրութեանց ։

Երկրորդ, Թէպէտ մարդս խիստ ընդարձակ բնական իրաւանց տէր ըլլալու ընդունակութեամբ ծնած է, բայց իր քաղաքական վիճակին մէջ կամ տկարութենէն և կամ անհոգութենէն բոլոր իրաւունքները յափշտակուած կը գտնանք, և եղաւ անանկ ժամանակներ մանաւանդ թէ շատ երկար ժամանակներ, յորում տիրապետները իրենց բացարձակ կամքէն ուրիշ իրաւունք մը չ'ճանչցան և չ'տուին ժողովրդեան ։ Այս անիրաւութեան դարը շատ և շատ ազգաց համար տակաւին խիստ առոյգ տևողութեան մէջ է, Սահմանադրութիւնը միայն կը ջանայ մարդուս բնական իրաւունքը իր յափշտակիչներուն ձեռքէն կորզելու, բայց ուր որ ընդդիմութիւնը իր ջանքէն վեր է, քիչով կը

իր կատարելապէս ճանչցած իրաւանցը տէր ըլլալ․ և մաս մըն ալ անոնք ճանչնալէ, և անոնց տէր ըլլալէ բոլորովին զուրկ եղած ըլլալ։

Սպասել, որ ցրուեալ ժողովրդեան մը ամեն մասունքը կատարելապէս իրենց իրաւունքը ճանչնան և անոնց տէր ըլլան, յուսահատ համբերութիւն կամ յուսակտուր ակնկալութիւն մըն է։

Թողուլ, որ բաժանեալ ազգի մը զանազան մասերը, իրենց գտնուած վիճակին հանգամանացը հետեւին, ազգին մէջ բաժանում մը մշտնջենաւորել է։

Մաս մը ժողովրդեան, ազգին յառաջն իյնալ, ընդհանուրին իր իրաւունքը ճանչցընել և անոր տէր ընել, գովելի, բայց դժուարին ձեռնարկութիւն մըն է։

Այս դժուարութիւնը բաւական կը դիւրանայ երբ ժողովրդեան մը աչքին առջին կը դրուի թէ իրենց ճանչնալու և տէր ըլլալու իրաւունքներն ինչ են, կամ որոնք են, և անոնցմէ սպասուելու օգուտները ինչ տեսակ բաներ են։

Ստոյգ պէտք է որ, ժողովրդեան իրաւանց նկարագիր մը ամեն առանձնագրութենէ յառաջ ընթանայ։ Մեննէին չենք կրնար երեւակայել որ մարդ մը այս աշխարհիս մէջ ծնանի, ապրի, մեռնի, և իրաւունք մը չ'ունենայ։ Բայց թէ ինչ են մարդկութեան ընդհանուր, բացարձակ, և անհատական իրաւունքները, այս խնդիրը, թէպէտ մասնաւոր փիլիսոփայք և քաղաքագէտք լուծեցին կամ լուծել կարծեցին, բայց ընդհանուր հաւանութեամբ վաւերացեալ լուծում մը տակաւին չենք գիտեր։

Բայց երբ մարդ մը կառավարութեան մը տակ է, այն ժամանակը այս խնդրոյն լուծումը դիւրին է․ վասն զի տանիկ վիճակի մը մէջ ամեն մարդ պարտաւորութիւն մը կ'ունենայ կառավարութեան, որն որ կ'ըլլայ կառավարութեան իրաւունքը, և կառավարութիւնն ալ պարտաւորութիւն մը կ'ունենայ իր վարչութեանը տակը եղող ամեն մարդու, և որն որ կ'ըլլայ անոնց ի-

«Ժողովուրդը միշտ իրաւունք ունի իր Սահմանադրութիւնը փոխելու. վասն զի ժողովուրդ մը չ՚կրնար ինք զինքն անանկ հաստատուն օրէնքներու տակ, որ զանոնք նաև իր օգտին պահանջած ժամանակը չ՚կարենայ փոփոխել։ Նոյնպէս ոչ ոք իրաւունք ունի բռնադատելու ժողովուրդ մը իր ընդունած օրէնքը չ՚փոփոխելու, եթէ այն փոփոխութիւնը իր երջանկութեանը հարկաւոր է։

«Վասն զի եթէ ժողովուրդ մը իր վրայ, իր դրած օրէնքը փոփոխելու կարողութիւնը չ՚ճանչնայ, ինքզինքը իր մէկ ժամանակուան կարծեացը գերի կը հրատարակէ, և իր կարողութեանցը չափ և պայման մը կը ճանչնայ։

«Սահմանադրութեան նպատակը և առարկան առանց խտրանաց, ազգի մը իւրաքանչիւր անհատին բնական իրաւունքները ամենուն ապահովել է։

«Երեւելի պէտք է որ, Սահմանադրութիւնը կատարելապէս իր իրաւունքը ճանչցող ազգի մը ընդհանրութեան որոշումը ըլլայ։ Եթէ ասանկ չըլլայ, ազգ մը իր կառավարութեան ձևը թէև ինքն որոշած ըլլայ, իրեն համար միշտ անօգուտ կ՚ըլլայ։ Նման կառավարութիւն մը միշտ պակասաւոր կ՚ըլլայ, և ազգային կամաց գործադիր եղող իշխանութիւնները, ժողովրդեան մը իր իրաւանցը տգիտութենէն իրենց անձնական օգուտ քաղելով, վերջապէս անոնց վրայ կը բռնանան և կը տիրապետեն։ Միմիայն ազգաց պատմութիւնը ասոր կը վկայէ»։

Ամփոփ և իրարու հետ շարունակ յարաբերութիւն ունեցող ազգերուն համար, յիրաւի ասոնք սահմանադրական անժխտելի ճշմարտութիւններ են, բայց ցրուեալ և իրարու հետ շարունակ յարաբերութիւն չունեցող ժողովուրդ մը կրնայ այս սկզբանց բացառութիւն մը համարուիլ։ Վասն զի ցրուեալ և բաժանեալ ժողովրդեան մէկ մասը կրնայ կատարելապէս իր իրաւունքները ճանչցած ըլլալ. [illegible]ուս մաս մըն ալ կրնայ

լու որ միւս մասն ալ որոշեալ ժամանակի մը մէջ բա-սանց չ'հեռանէին :

Սահմանադրական միապետութիւնը, ունի գրուն միապետականութեան բոլոր երեւոյթը, բայց իր կառավարութիւնը ունի ռամկապետութեան բոլոր պահանջմունքը : Հոն թագաւորը կը թագաւորէ բայց չ'կառավարեր : Հոն ժողովուրդը կը կառավարէ բայց չի թագաւորեր : Հոն միապետականը կը գոհանայ իր երեւոյթովը և հոն սահմանադրականը կը գոհանայ իր գործովը. և ասանկ երկու հակառակ ծայրերը իրարու հետ միացընող դրութիւն մը առաջ բերէ խիստ մեծ անուղութիւն կը խառնանայ :

Բայց որպէս զի թագաւորը թագաւորէ բայց չ'կառավարէ, և ժողովուրդը կառավարէ բայց չ'թագաւորէ, հարկ կ'ըլլայ որ երկու կողման իրաւունքները և պարտաւորութիւնները, որոշուին և հաստատուին, որն որ կ'ըլլայ Սահմանադրութեամբ, և որուն վրայ պիտի խօսինք՝ հետեւեալ գլխոյն մէջ :

## ԳԼՈՒԽ Բ.

### Սահմանադրութեան հաստատութիւնը և նպատակը :

Եւրոպայի խիստ երեւելի քաղաքագէտները այսպէս կը միտին, որ միայն այն ժողովուրդը կրնայ Սահմանադրութիւն հաստատել, որն որ իր իրաւունքը կը ճանչնայ և իր իրաւանցը տէր է :

Ահաւասիկ բուն իսկ, իրենց խօսքը : «Սահմանադրութիւնը, ազգի մը կառավարութեան հիմնական օրէնքաց ամբողջութիւնն է, որով կառավարութեան զանազան մասերը իրենց իրաւանց տէր կ'ըլլան և իրենց պարտաւորութիւնները կը ճանչնան :

«Ժողովրդեան և միայն ժողովրդեան կրնայ իրեն Սահմանադրութիւն մը պատրաստել. և այն սահմանադրութիւնը որ ժողովրդեան գործը չէ, կամ իրմէ ընդունուած չէ, պակասաւոր և գէշ է.»

յետագայ օղակին մինչև կէտը կը յառաջանայ, և յե-տագայ օղակն ալ իր նախնթաց օղակին մինչև կէտը կը յետադիմէ, եթէ իւրաքանչիւր օղակ այս կերպով ի-րարու չթափանցէին և զիրար միայն շօշափէին, շղ-թային շարունակութիւնը անհնարին կ'ըլլար, այսպէս է ըստ ամենայնի նաև մարդկային գործողութեանց շարունակութիւնը: Եթէ անցեալը ներկային և ներ-կայն անցեալին չթափանցէր, շարունակութիւնն ան-հնարին է:

Պատմութիւնը, որ անցեալին արձանագրութիւնն է, չ'ուրացուիր. Գաղղիացիք իրենց մեծ յեղափոխու-թեան ժամանակը թէպէտև թագաւորական արձան-ները և յիշատակները ջարդուփշուր ըրին, և արքա-յական գամբաններն անգամ անհետ ըրին. բայց պատ-մութեան արձանագրութիւնը չ'կրցան եղծել:

Ուստի եթէ միապետութեան չափազանցութիւնը Սահմանադրութիւն կը ծնանի, Սահմանադրութեան չափազանցութիւնն ալ հարկաւ դարձեալ միապետու-թիւն կը ծնանի: Պատմութիւնը շատ մը ազգաց հա-մար յայսմ մասին կենդանի վկայ մըն է: Ուր կը տես-նուի ազգի մը կամ տէրութեան մը, չափազանցու-թեամբ հեռացնելով միապետութենէ 'ի ռամկապետու-թիւն և ռամկապետութենէ 'ի միապետութիւն անց-նիլը, և անոր պատճառները:

Ստոյգ է, հին և նոր ժամանակները, աստիէն ան-դիէն եղևան եղած ռամկապետութիւնները, միապե-տութեանց հետ բաղդատելով. քիչ տևողութիւն ու-նեցան. բայց նորերը կը պնդեն և կը յուսան, որ կար-գաւորեալ ռամկապետութիւն մը պիտի կրնայ երկար ժամանակ տևել:

Բայց լուսաւորեալ Եւրոպայի հիմակուան ընդու-նած կառավարութեան ձևը, չափաւորեալ, կամ որ նոյն է Սահմանադրական միապետութիւն է: Այս ըն-դունուելով կը վարուին հիմայ Եւրոպայի տէրութեանց մեծագոյն մասը, և պատճառ մը չունինք տարակուսե-

րով փոխանակ պատժուած ըլլալու, կ՚ըլլայ պատժող, և այն ձեռքը որ կծագով զմաճը կը պատժէ, մահով ա–ղթայը կը պատժէ։

Այն ժամանակը կը տեսնուի ժողովուրդ մը, որ բուռն զօրութեամբ կ՚ելլայ և ինչ միջոցով որ ըլլայ, զինքը յանիրաւի հարստահարող իշխանութիւնը կը տապալէ։

Ու ահա այսպէս, միապետութեան չարաչար գործածութիւնը բնականապէս ՚ի Սահմանադրութիւն կ՚առաջնորդէ, որ ուրիշ բան չէ, բայց եթէ անսահման իշխանութեան մը չափաւորութիւնը։

Ուստի ժողովրդեան մը սահմանադրական զգացումը այնչափ սաստիկ է, որչափ որ իր հարստահարութեան և ճնշման դարերը բազմաթիւ են։

Նանիկ դիպուածի մը մէջ ժողովուրդ մը, հասարակօրէն երկու կերպով կը չափազանցէ։ Մէկ մը զինքը հարստահարող միապետներուն անիրաւութիւնը յիշած ատենը, զինքը երջանկացնող միապետներուն բարերարութիւններն ալ բոլորովին մոռնալով, որ է ապերախտութիւն։ Ու մէյ մ՚ալ, իրենց թշուառութեան բուն պատճառը, միապետութեան չարաչար գործածութեան տալու տեղ, անոր սկզբանցը տալով. որով այն սկզբանց հաւատարիմ, բայց անոր չարաչար գործածութեան անմասն եղող անմեղներն ալ հարուածելով կը հարուածէ, և որ է անիրաւութիւն։

Եթէ ժողովուրդը այս երկու չափազանցութիւնք չունենար, զինքը միապետութենէ ՚ի սահմանադրականութիւն տանող ճանապարհը իր ոտքերը խիստ դիւրին և խիստ արագ կ՚ըլլար։

Անցեալը ներկային, և ներկայն ապագային հետ շարունակ յարաբերութիւն և կապակցութիւն պիտի ունենայ։ Եթէ մարդկային գործողութեանց շարունակութիւնը շղթայի մը նմանցընենք, յայտնի կը տեսնանք ինչպէս անցեալը ներկային և ներկայն ապագային կը թափանցէ։ Շղթայի մը նախընթաց օղակը, իր

պէտք է իրարու յաջորդել, և անանկով՝ մէկուն աւրա-ծը կրնայ միւսը շինել. և ժողովուրդը փոխադարձա-բար երջանկութեան կամ՝ թշուառութեան մէջ թա-թափելով, մէկուն կամ՝ միւսոյն բաւական երկար ժա-մանակ ան ողջութիւնը չկրնար տևել, որ սթափի. և իր երջանկութեան կամ՝ թշուառութեան սկզբնա-պատճառը հետազօտէ։

Երկրորդ, նաև իրարու ետևէն շարունակաբար ա-նիրաւ միապետներ ալ յաջորդեն, թշուառութիւնը մինչև որ ընդհանուրին զգալի ըլլայ շատ ժամանակի կարօտ է։ Որովհետև ընկերութիւն մը ոչ մէկէն 'ի մէկ կերջանկանայ և ոչ մէկէն 'ի մէկ կը թշուառանայ։

Անիրաւ միապետի մը բռնութեան սահմանը 'ի ըս-կըզբան խիստ նեղ է, և իր վերջին ընդարձակութեա-նը այն ժամանակ կը հասնի, երբ աւտգորեարը այն-չափ կը նուաստանայ, որ ինքնակալին մոլութիւնները իբրև առաքինութիւն կը ծափահարէ։

Նման վիճակի մը մէջ, ինքնակալի մը անիրաւու-թիւնը անսահման է, և ասոր բնական հետևութիւ-նը եղող ընդհանուր թշուառութիւնը նմանապէս անչափ։

Բայց այս համակործան թշուառութենէն ալ ժո-ղովուրդ մը մինչև որ սթափի, տակաւին շատ ժամա-նակի կարօտ է։

Ժողովուրդ մը միշտ կը սիրէ հաւատալ, որ զինքը ճնշող հարստահարութիւնը, իրեն երկնային հարուած մըն է 'ի զգաստութիւն։ Ասոր միշտ կը յուսայ, որ Աստուածային ողորմութիւնը օր մը չէնէ օր մը իրեն այցելութիւն պիտի ընէ։ Բայց երբ անիրաւութեան չափը լցուի, Աստուածային արդարութիւնը միապէս կը պատժէ, թագաւորը և հպատակը։

Ասոր ժողովուրդը բաւական ժամանակ հարստա-հարուելէն ետքը, երբ կը տեսնէ որ պատիժը կը մըշ-տընջենաւորի, յայնժամ միայն կ'սթափի և իր կացու-թիւնը կրաւորականէն 'ի ներգործական կը փոխէ, և

# ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ԳԼՈՒԽ Ա.

### Սահմանադրութեան ծագումը։

Ազգային փոփոխութիւններն ալ ունին իրենց տրամաբանական եզրակացութիւնները։

Այսպէս, եթէ միապետական իշխանութիւնները չարաչար չ՚գործածուէին, Սահմանադրութիւն չէր ծնաներ։

Աշխարհս չ՚տեսաւ մինչև հիմայ միապետական իշխանութիւն մը որ երկար ժամանակ տևողութիւն ունենայ և չ՚խանգարի, և խանգարեալ միապետութեան բնական յաջորդը Սահմանադրութիւնն է։

Մարդկային ընկերութեան մեծամեծ օգուտներ ընող, վեհանձն արդար և առաքինի իշխանականներ եղած են անշուշտ, բայց առաքինութիւնը կ՚ատացուի, և չի ժառանգուիր։ Եթէ տեսնուեցաւ իշխանական մը որ իր գահակալութեան վայրկեանէն մինչև դագաղը, միօրինակ բարի, միօրինակ առաքինի մնաց. անիկայ բացառութիւն մը եղաւ. բայց միապետական ազգատոհմի մի դարուց 'ի դարս, առաքինի ժառանգներ ունենալը, Տիեզերական պատմութեան մէջ արձանագրութիւն չ՚ունի։

Մարդիկ բարի և արդար միապետի մը տակ որչափ երջանիկ կ՚ըլլան, նոյն և անիրաւ միապետի մը տակ ալ այնչափ թշուառ և հարստահարեալ կ՚ըլլան։

Բայց այս թշուառութիւնը և հարստահարութիւնը, ժողովրդեան մը մէկէն 'ի մէկ զգալի չըլլար, երկու գլխաւոր պատճառաւ։

Մէյմը որ արդար կամ անիրաւ միապետը կրնան հետ-

Ազգը ունեցաւ Սահմանադրութիւն մը. ես կը կարծեմ որ շատերը տակաւին չեն գիտեր անոր ինչ ըլլա՛լը, ուրկէ գալը և ուր երթալը. անոր համար գրեցի։

Թ՛ող ամէն Հայ կարդայ ատիկայ. և կողմնակցութիւնը լռէ, երբ ճշմարտութիւնը կը խօսի։

Vardanean, Hovsep

# ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆՆԵՐ

ԵՒ

## ԱՆՈՆՑ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԳՐԵԱՑ

## Յ. ՎԱՐԴԱՆԵԱՆ




ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԻՒՀԵՆՏԻՍԵԱՆ

1863

# ՍԱՀՄԱՆԱԴՐԱԿԱՆ

# ԺՈՂՈՎՐԴՈՒԹԻՒՆՔ

ՈՒ

## ԱՆՈՆՑ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

ԳՐԵԱՑ

Յ. ՎԱՐԴԱՆԵԱՆ

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԻՒՀԵՆՏԻՍԵԱՆ

1863

